

## Ապրիլի 22-ին լրանում է
## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 117-ամյակը

Հարկավոր էր ամբողջ մի դասի
Ինչքան քրտինք ու ջանք,
Որ ծնվեր հանճար մի այնպիսի,
Ինչպիսին էր ինքը...
Ինչքա՜ն եռանդ էր պետք—

Արևմուտքից մինչև արևելք
Ու հյուսիսից՝ հարավ:
Այսպես
Զոլեց նա կամքը մեր
Եվ հաղթության տարավ:

**Ե. ՉԱՐԵՆՑ**

«Կոմունարների պատը Փարիզում», (հատված)

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:
ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում. 4•87



*Հանձնված է տպագրության 06.II. 87 թ.: Ստորագրված է տպագրության 25.III. 87 թ.: ՎՖ 02247: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 67032: Պատվեր՝ 320: Գինը՝ 15 կոպ.:*
*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 06.02.1987 г. Подписано к печати 25.03.1987 г. Формат 70×100 1/16. ВФ 02247. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 67032. Заказ 320. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

# Գառնուկը

Նկարը՝ ՌՈՒԲԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Կեսգիշերային Թիֆլիսը թաղված էր թանձր խավարում:

Սոլոլակի թաղի ներս ընկած բակերից մեկի փայտյա աստիճաններով դեպի վերին հարկը տանող մի սենյակում, գրասեղանի առջև նստած էր առաջին հայացքից լայնաթիկունք և բարձրահասակ թվացող մեկը: Բայց իրականում նա այդպիսին չէր, քիչ առաջ, երբ մի պահ ոտքի կանգնեց հոգնած մեջքը ուղղելու՝ նույնիսկ միջահասակից էլ ցածր թվաց:

Կանաչավուն լուսամփոփով նավթի ճըրագը, որ իր աղոտ լույսը տարածել էր գրքերով և ձեռագրերի տրցակներով ծածկված գրասեղանին, իր թրթռուն շողերով խաղում էր նրա լայն ու բարձր ճակատի վրա և մերթ ընդ մերթ կայծկըլտում խիտ բեղերի և կարճ կտրված մորուքի մեջ հազիվ նշմարվող ճերմակ թելերին:

Ուշ երեկոյան՝ ճրագվառոցին, «Մշակ» լրագրի խմբագրությունից տուն վերադառնալով, նա հենց այնպես, ոտքի վրա մի թեթև ընթրելուց հետո, յոթ-ութ ժամից ավելի էր, ինչ նստել էր գրասեղանի առջև, ինչպես միշտ, ինչպես ամեն գիշեր:

Նրա շուրթերն այրվում էին ներքին տենդից ու խռովքից, և նա, մերթ ընդ մերթ, առանց աչքերը թղթից կտրելու, համարյա շոշափելով վերցնում էր կիսով չափ խմված մուգ թեյի բաժակը, խմում մի կում, և ապա նորից գրիչը տենդագին շարժվում էր դեղնաշող թղթի վրա:

Հասնելով վերջակետի՝ նա մի կողմ դրեց գրիչը, հանեց իր ձվածիր կապույտ ակնոցը, տրորեց կարմրած, հիվանդոտ աչքերն ու կռացավ քիչ առաջ գրված մանրատառ, գեղագիր և դեռևս թաց վերջին տողերի վրա:

«Խուցի աղյուսով ծածկված մերկ հատակի վրա նստած էր մի օրիորդ հասուն հասակով: Նրա դեմքը նիհար էր ու գունատ. տխրությունը ազատ կերպով ար-

տափալլում էր սևորակ աչքերի մեջ: Նա նստած էր մի քրքրված վերմակի մոտ, որի մեջ հեկեկում էր մի տասներկու տարեկան տղա: Ես բարձրացրի վերմակը. հիվանդը բոլորովին պառկած էր կապերտի կտորի վրա:

— Դա ո՞վ է,— հարցրի օրիորդից:

— Եղբայրս է,— պատասխանեց նա հոգոց հանելով:

— Դու հայր, մայր չունե՞ս,— կրկնեցի իմ հարցը:

— Բոլորը մեռան...— ասաց նա տխուր ձայնով:

Այս պատասխանը սրտաշարժ էր և զարհուրելի՝ որպես ինքը՝ մահը»:

Նա խոր շունչ քաշեց և, աչքերը փակելով, հենվեց աթոռի թիկնակին: Ընդամենը մեկուկես տարի առաջ էր, 1877 թվ. հոկտեմբերին, երբ նա, դուրս գալով Թիֆլիսից—Ղազախ, Իջևան—Դիլիջանով մեկնում էր դեպի իր նոր պաշտոնավայրը՝ Ագուլիս, ուսուցչություն անելու: Հույս ուներ Թավրիզում կրած հալածանքներից հետո հանգստանալ: Սակայն հանգիստ չկար. սկսվել էր ռուս-թուրքական պատերազմը. ռուսական հաղթական բանակները մտել էին Բալկանները. տաճկական արյունոտ յաթաղանից ազատագրվել էր Բուլղարիան, և Արևելյան Հայաստանի հայությունը պատերազմի բարեհաջող ավարտի հետ էր կապում արևմտահայության ազատագրության բաղձալի հույսերը: Սակայն հանգիստ չկար. հենց պատերազմի առաջին օրերից արյունարբու շեյխ Ջալալեդդինը սրի քաշելով ամայացնում էր շեն գյուղերն ու ավանները, և Հաղբակա գավառից և Բայազետի կողմերից փախըստականների հոծ, սարսափահար խմբերը իրենց փրկությունն էին փընտրում սահմանակից Սալմաստի հայ գյուղերում, Արարատյան դաշտավայրից մինչև Ծաղկյաց գավառ՝ դեռևս պարսից տիրապետության օրերից ամայացած Սևանա ափերում: Ահա, հենց այդ օրերին էր, որ Էջմիածնում, թուրքական յաթաղանից մազապուրծ գաղթականների մեջ նա տեսավ և այդ մատաղահաս աղջըկան...

«Բոլորը մեռան...». այդպես էլ չիրականացավ Արևմտյան Հայաստանի ազատագրությունը. թեև 1877 թ. նոյեմբերի 6-ին ռուսական քաջարի գնդերը, հայազգի գեներալ Հ. Լազարևի գլխավորությամբ, ազատագրեցին Կարսը, որի հետ և պատմական Անին, սակայն Տավրոսի անառիկ լեռներում ազատության դրոշակ պարզած մի բուռ զեյթունցիք իզուր ըսպասեցին ռուսական զորքերի առաջխաղացմանը: Արևմտաեվրոպական բուրժուական մեծ պետությունները, ինչպես միշտ, նորից հովանավորեցին օսմանյան բռնակալությանը, և պարզ է, որ այլևս ոչ մի հույս չպիտի կապել ո՛չ նրանց և ո՛չ էլ մարդակեր սուլթանի խոստացած բարենորոգումների հետ: Այդ օրերից մընաց միայն արյունոտված սրտով գրած իր «Ջալալեդդինը», թուրքական բարբարոսության կամակատար այդ քուրդ հրոսակապետի հրեշային կերպարը: Մեծ էր «Ջալալեդդին»-ի հաջողությունը: Նա մինչև հիմա էլ տարբեր քաղաքներից, առավելապես երիտասարդ ընթերցողներից ստանում է բազմաթիվ նամակներ. ինքն էլ ողջունեց նրանց. ինքն էլ «Մշակում» ասաց իր երախտագիտական խոսքը հատկապես նոր սերնդին. «Երբ հեղինակի խոսքը արձագանք է գտնում մանուկ սրտերի մեջ, նա երջանիկ է,— գրել է նա:— Սերմը բարեբեր հողի վրա է ընկնում: Սեղմո՛ւմ եմ ձեր ձեռքը, ով ապագայի թարմ հույսեր, դո՛ւք ողջ լինեք»: Այո, այժմ, քան երբևէ պետք է արձագանքել համաժողովրդական ազատագրական սրբազան իղձերին, առավելապես հերոսական մղումները պիտի դառնան իր գրելիք վեպերի նյութը: Արդեն գրել և հրատարակել է «Սալբին», «Խաչագողի հիշատակարանը», պարսկական դառն իրականությունից առնված իր «Հարեմ»-ը, վերջերս լույս տեսավ և «Ոսկի աքաղաղը», որտեղ կերտել է սիրտըն ու հոգին մամոնային վաճառած Պետրոս Մասիսյանի նողկալի կերպարը, նրան հակադրելով այս օրերի պատմական իրադարձություններին արձագանքող, կյանքը ժողովրդի ազատագրությանը նվիրաբերած երիտասարդ հայրենասեր Ստեփանին:

Իսկ այժմ գրում է «Խենթը»: Այս վեպում նա կարտացոլի հարազատ ժողովրդի սոցիալ-քաղաքական կյանքի դաժըն պայմանները. ճակատագրական այս օրերին ինչպե՞ս կարելի է անտարբեր մնալ, լռել՝ արևմտահայության այս զարհուրելի վիճակը տեսնելով: Հայը ոչնչանում, բնաջնջվում է ոչ միայն պատերազմների ընթացքում, ինչպես ականատես եղավ մեկուկես տարի առաջ, այլև «խաղաղ ժամանակներում»: Դեռ պա-

տանի էր, հազիվ 17 տարեկան, երբ հոր՝ վաճառականապետ Մելիք Միրզաբեկի քարավանով հայրենի Սալմաստից շրջագայության դուրս եկավ մինչև Վան, Տարոն-Տուրուբերան: Այո, ով չի ճանաչում իր հայրենիքը՝ նա չի կարող սիրել այն... Այնտեղ էր, Վանա ծովի ափին, որ ինքը գրեց իր «Ջայն տուր, ով ծովակ»-ը, որ լույս տեսավ «Հյուսիսափայլ»-ում: Այս վեպում, անշուշտ, իր հերոսները ատելությամբ կպայքարեն թուրք հարստահարիչի և թուրք նվաճողի դեմ. բռնակալն ինքն է պատրաստում իր թշնամուն: «Խենթի» մեջ ծավալվող գործողությունները կլինեն այն, ինչ ինքը տեսավ դեռ մեկուկես տարի առաջ՝ ռուս-տաճկական պատերազմի ժամանակ և դրան նախորդած տաժանելի օրերին: Գլխավոր հերոսը կլինի ապարանցի քաջազն Սամսոն Տեր-Պողոսյանը, նա, որ պաշարված Բայազետի բերդապարսպից իջնելով, կիսախելագար քուրդ ձևանալով, քրդական հրոսակախմբերի միջով հասավ մինչև հայազգի գեներալ Տեր-Ղուկասովի բանակը, բերդի օրհասական լուրը տանելով: Նա Սամսոնին հանդիպեց Դիլիջանի ճամփին, վրանների տակ բուժվող մի խումբ վիրավորների մեջ: Ինքը նրան կտա Վարդան անունը՝ մեկ անգամ ևս ոգեկոչելով Ավարայրի հերոսին, իսկ նրա սիրած աղջիկը, որին պիտի տա Լալա (կակաչ) անունը, կլինի այն մատաղահաս օրիորդը, որին հանդիպեց Էջմիածնում, վերմակի տակ հեկեկացող երեխայի կողքին... Հետո, կավարտի արդեն տարիներից ի վեր իրեն հանգիստ չտվող «Կայծեր»-ը: Հայ շինականի, հատկապես արևմտահայ շինականի անապահովության գլխավոր պատճառը ապրուստի հիմնական աղբյուրից՝ հողից զուրկ լինելն է: Ազատագրական կռվի նպատակը՝ կրթել, պատրաստել մի այնպիսի սերունդ, որն ընդունակ լինի նման կարևորագույն խնդիրն իրագործելու: Հայաստանի ազատագրության համար ոտքի ելնող իր «Կայծեր»-ի հերոսները պիտի լինեն այնպիսին, ինչպիսին լինելու խորհուրդ է տալիս որսորդ Ավոն. «Ողորմած եղիր դեպի քեզանից տկարները, բայց թշնամուդ մի՛ խնայիր, սրբիր անբախտի արտասուքը, մխիթարե նրան, եթե այդ կպահանջեր մինչև անգամ քո կյանքը, քո արյունը»: Արևմտաեվրոպական մեծ տերությունների նենգ քաղաքականությունը ցույց տվեց, որ այժմ, քան երբեք, հայը պիտի ձգտի ազատագրվել սեփական ջանքերով: «Կայծերի» հերոսները պիտի աշխատեն նմանվել և Դավիթ Բեկին, 18-րդ դարի հայ ժողովրդի մղած ազատագրական կռիվների փառավոր առաջնորդին, որ գլխավորում էր պարսկական-օսմանյան անարգ լծի դեմ ուղղված հակաժողովրդական ապստամբությունը:

Այդ վեպն արդեն շարվում է, և հենց այս տարվա՝ 1880 թվականի ընթացքում լույս կտեսնի «Մշակ» լրագրում:

Իսկ հետո՞. օ՜, դեռ ինչքա՜ն գրելիքներ կան... Արդեն վաղուց ի վեր իրեն հանգիստ չեն տալիս Մովսես Խորենացու և Պարույր Հայկազնի կերպարները: Այժմ, քան երբեք, պետք է գրել «Պարույր Հայկազնը», որի հիմնական գաղափարը պիտի լինի այն, որ մարդու ամենանվեմ և գերագույն պարտականությունը սերն է դեպի հայրենիքը, և մեծագույն առաքինությունը՝ հայրենիքին նվիրվելը: Անձնասիրությունը զոհել հայրենիքի փրկության համար. ահա այն վեհ գաղափարը, որ պիտի լինի նոր սերնդի գործունեության հիմքերի հիմքը:

Վաղորդյայնի խոր լռությունը խզող աքաղաղների զիլ կանչերը կտրեցին նրան իր նվիրական խոհերից. նա ցնցվեց և ոտքի ելնելով, դուրս եկավ պատշգամբ. ապակեպատ ընդարձակ պատշգամբում շարված ծաղկամաններում տրոպիկական գաղջությամբ բուրում էին նրա սիրելի ծաղիկները: Վերցնելով ցնցուղը, նա մեկ-մեկ ջրում էր, երբ հանկարծ ականջին հասան զանգուլակի ծլնգոցները. լայն ու բարի մի ժպիտ ողողեց մինչ այդ անքնությունից մթնած թուխ դեմքը. պատշգամբի անկյունում, ճաղից կապված էր մի ճերմակ գառնուկ: Նա այն գնել էր երեկ, սբ. Գևորգի առջև ընկած Մեյդանում. ուր որ էր պիտի երևար կառապան Վանոն, որպեսզի գառնուկը տանեին Օրթաճալա:

Այո, այսօր վերջապես պիտի հանգստանար իր խռովված խիղճը:

Այդ բոլորը պատահեց անցյալ կիրակի. ընտանիքն ուղարկել է Սալմաստ՝ հարազատների մոտ. մենակ է մնացել. «Մշակի» գրաշարապետ Մովսեսը նրան հյուր տարավ Օրթաճալայում գտնվող իր փոքրիկ տնակը:

— Կհանգստանաք, պարոն Րաֆֆի, հիանալի պարտեզ ունենք, իսկ կինս՝

Սոֆիան, շատ կուրախանա ձեզ տեսնելով. վաղուց է փափագում. կարդացել է ձեր բոլոր գրքերը, հիացել է ձեզանով:

Գնացին շաբաթ երեկոյան. Մովսեսի փոքրիկ տնակի առջև նրանց դիմավորեցին նրա կինը և 10—12 տարեկան գանգրահեր Ասոն՝ իր փոքրիկ, ճերմակ գառնուկի հետ միասին:

Երեկոյան հիանալի բոզբաշ տվեցին. բայց ամբողջ գիշեր քունը չտարավ. կից սենյակից համարյա մինչև լույս լըսում էր փոքրիկ Ասոյի հեկեկոցները: Այդպես ճվվում, լալիս են փոքրիկները, հատկապես ականջացավի ժամանակ: Նույնիսկ ցանկացավ վեր կենալ, որպեսզի փոքրիկի ականջին ծխախոտի ծուխ փչելով, ցավը թեթևացնի. այդպես էին անում հայրենի Փայաջուկում. ինքն էլ է ականջացավ քաշել: Սիրտը մղկտում էր. հենց այդպես հեկեկում էր և Էջմիածնում վերմակի տակ պառկած հիվանդ երեխան... Հետո չիմացավ, թե ինչպես քնեց. սակայն առավոտյան պարտեզի մի անկյունում տեսավ գառնուկի մորթին՝ Քոհի ափին, կանաչների մեջ ընկած, և հասկացավ. ձեռնապակաս տանտերը իրեն պատվելու համար մորթել էր իր միունճարի գառնուկը...

Ամբողջ մի շաբաթ տանջվում էր խղճի խայթից. սակայն այսօր կուրախացնի փոքրիկ Ասոյին. իր գնած գառնուկը ոչ միայն ճերմակ է և գանգուրիկ, այլև վըզից զանգուլակ ունի կախված...

... Ուշ երեկո էր, որ նա կառքով վերադառնում էր Օրթաճալայից. հիանալի օր էին անցկացրել. Ասոյի ուրախությանը չափ ու սահման չկար. ուրախ էր տունն վերադարձել և Րաֆֆին. կառապանն Վանոն երգում էր «Զայն տուր, ով ծովակ»-ը:

Հեռվից լսվում էին Թիֆլիս քաղաքի իրիկնաժամի ղողանջները. այստեղ, այս սիրելի քաղաքում էր նա անցկացրել գիմնազիստի իր քաղցր պատանեկությունն ու վաղ երիտասարդությունը. այստեղ էր ուսումնասիրել հայոց պատմությունն ու ոսկեդարյան գրականությունը՝ այժմ արդեն ծերունազարդ իր սիրելի ուսուցչի՝ նշանավոր հայկաբան Կարապետ Բալախյանցի մոտ:

Եվ ինչքա՜ն էր տառապել թե՛ չքավորությունից և թե՛ թշնամիների որոգայթներից...

Սակայն, այնուամենայնիվ, հիանալի երեկո էր, օդը լի էր ծիծեռնակների ճըռվողյունով ու ծաղկած քարափների բուրմունքով: Նա լսում էր իր «Զայն տուր, ով ծովակ»-ը և մտքով նորից իր հերոսների հետ էր, իր Վարդանի, իր Դավիթ Բեկի, իր Կարոյի, իր Ասլանի...





## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# Խելքից պակաս արքան

Խորամանկ աղվեսը
Որսի է գնում,
Հանդիպելով առյուծին,
Սիրտն է դող ընկնում:

Ծառը կտրած ասում է.
— Առյուծ, ձեռքերդ վեր,
Էլ չես կարող դու
Իմ ճանկից ազատվել:

Ու առյուծը լեղաճաք
Գլուխն առնում է, փախչում,
Եվ խորամանկ աղվեսն է
Քահ-քահ ծիծաղում:

Էլ ի՞նչ արքա գազանների,
Որ չի գտնում ելքը,
Նրա ուժը ինչի՞ն է պետք,
Երբ պակաս է խելքը:

# Խաբված տերևն ու քամին

Քամին ասաց տերևին.
«Հերիք նայես արևին,
Արևի տակ վառվել ես,
Ոտից գլուխ կարմրել ես,
Բավ է այսքան համբերեմ,
Թող քո այտը համբուրեմ,
Թռիր ծառից, իջիր ցած,
Թռչենք թև-թևի տված»:

Ու համոզեց տերևին,
Պոկեց ճյուղից վերևի,
Դաշտ ու ձորով նա տարավ,
Գցեց մի մութ քարանձավ:
Խաբված տերևն այդ մթում
Կողքի թփին էր բողոքում.
— Ջերմ արևը մենք թողած
Այստեղ ինչո՞ւ ենք փտում:

# Ուսուցչուհիս

Ուսուցչուհուս ժպիտը տաք
Կարծես լինի վառ արեգակ:
Կնճռոտված դեմքը բարի
Երկինքն է ջինջ:
Ուսուցչուհուս շուրթից հնչող
Ամեն մի թիվ, ամեն մի տառ
Մեր սրտերի մեջ ճախրում է
Աղավնու պես խաղաղության:
Եվ բացի այդ, ուսուցչուհիս
Նման է շատ իմ մայրիկին,
Մայրիկիս պես զիջող է միշտ:

Եթե ասեմ խելոք եմ, հեզ,
Սուտ է մի քիչ,
Երբ չարություն եմ անում ես,
Ու այդ պահին ուսուցչուհիս
Նայում է ինձ, ասում՝ եղա՞վ.
Ու մի քիչ անց մոռանալով,
Ժպտում. «Դասդ գիտե՞ս, տղաս»,
Այդ պահին էլ թվում է ինձ՝
Կյանքում երբեք
Վախենալու ոչինչ չկա,
Քանի դեռ մայր հողագնդում
Ուսուցչուհի և մայրիկ կա:

ԲԵՆԻԱՄԻՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Երևան, Մ. Նալբանդյանի անվան դպրոցի
4-րդ դասարան



## Հարիսա են եփում

Մուսա լեռան հերոսամարտի տարեդարձի առթիվ

Հարիսա են եփում, հարիսա են հարում.
Ամբողջ գիշեր՝ անքուն, ոտքի վրա,
Օջախներին ծանր կաթսաներն են եռում,
Ինչպես թեժ օրերին Մուսա լեռան:

Ահա բացվեց լույսը, բացվեց, փռվեց առատ
Ուրիշ լեռան վրա, ուրիշ տարում.
Հարիսա են եփում, հարիսա են հարում,
Ինչպես պապերն՝ հազար տարի առաջ:

Հավաքվել են, եկել մանուկ, մայրեր ու կին,
Հավաքվել է ամբողջ մի Հայաստան,
Հարիսա են եփում, բաժնում ամեն մեկին,
Ասես զենք են բաժնում մի մարտական:

Ասես պատմությունը քաշել, ետ են տարել,
Վրնջում են ձիերն փոքր-ինչ անդին,
Խարույկների բոցից ասես լուսավորվել,
Հարություն են առել դարերը հին:

Նրանք նորից զինվոր հողի ու հայրենյաց՝
Ասես կռվի պիտի նետվեն նորից.
Թող զորավիգ լինի հաղթող բազկին նրանց
Այս հարիսան՝ հունցած արդար ցորենից...

## Մանկական պատկերասրահը Երևանում

Կրիան՝ իր տունը մեջքին առած,
Ժամփի կեսը կտրել ու կանգնել է:
Լարի վրա՝ մի խենթ լարախաղաց,
Բազմությունը վարում կարկամել է:

Կրկեսի կապույտ գմբեթի տակ
Մարզիկը թև առել ու թռչում է.
Ահա և ծուռվիզ մի խեղկատակ՝
Բերանը լայն բացել, քրքջում է:

Մեծափոր մեկը ծանր նստել,
Վարժ շամփուրում է խորովածը.
Վեցը ոտք ունի էշը այստեղ,
Այդ չորքոտանի աշարածը:

Ուրիշ աշխարհ է քո դեմ բացում
Մանկան նկարը, միտքը, բառը.
Հետաքրքիր է լինել մանուկ,
Ի՜նչ անուշ բան է մանկանալը:

Նորաբնակ են դեռ արվեստում,
Դեռ խակ է հույզը ու հուզումը,
Բայց ամեն դպրոց ու ուղղություն
Կգտնեք այստեղ, թե ուզում եք:

# Միխայիլ Մատուսովսկի

Միխայիլ Մատուսովսկին սովետական նշանավոր բանաստեղծներից է: Իր լավագույն գործերի համար նա արժանացել է Սովետական Միության պետ:ական մրցանակի: Մատուսովսկու բանաստեղծությունների հիման վրա գրված են շատ գեղեցիկ երգեր, որոնցից ամենահանրահայտը «Մերձմոսկովյան երեկոներ» սքանչելի երգն է:

Միխայիլ Մատուսովսկին, այցելելով Հայաստան, գրեց մեր երկրի նկատմամբ անկեղծ սիրով ու ներշնչանքով լցված մի ամբողջ գիրք, որը լույս կընծայի «Սովետական գրող» հրատարակչությունը՝ ռուսերեն և հայերեն՝ Սիլվա Կապուտիկյանի թարգմանությամբ: Մատուսովսկին և Կապուտիկյանը մեծ պատրաստակամությամբ մեր հանդեսին են տրամադրել մի քանի բանաստեղծություններ այդ գրքից, որոնք հանձնում ենք ընթերցողների ուշադրությանը:

Սաներ չի դնում նրանց կամքին
Արգելման ահն ու փորձի բեռը.
Ի հենուկս մեզ՝ ծովը՝ կարմիր,
Կապույտ են շենքն ու անտառները:

Հասու են նրանք նույնիսկ ցավին,
Գծում են Մասիսն, ավեր տունը.
Կողմնակի մարդ չեն բոլորովին,
Հենց իրենք են իրենց նկարում:

Այդ ո՞վ է մնում պաղ, անեռանդ,
Ո՞ւմ չեն դյութում հորդ այս գույները.
Բոլոր մանուկները՝ Դեյկ ու Ռեմբրանդտ,
Հանճարեղ են բոլոր մանուկները:

## Գոշավանքի առասպելը

Իջավ երեկոն դժնի ու դաժան,
Փլվեց երկինքը՝ խավար կրկնակի,
Ու վճիռ տվեց Լենկթեմուրն այնժամ՝
Այրել գրքերը Գոշ կոչվող վանքի:

Ու դուրս բերվեցին խուցերից թաքուն
Մագաղաթները՝ սարսափից դեղնած,
Մատյանները լուռ, որ մարդոց հանգույն
Դողդողում էին դահիճի դիմաց:

Ու դահճի սրած կացինների պես
Գրքերի դեզին մոտեցրին մոմեր,
Փաթաթվեց դեզին բոցն ամենակեզ,
Ուր որ է պիտի լափեր, կլաներ:

Թռչկոտում էին կայծերը բեկ-բեկ,
Ու ծավալվում էր կրակը հտպիտ.
Կանգնել-նայում էր Լենկթեմուրը նենգ,
Աչքերի խորքում՝ չարախինդ ժպիտ:

Դանդաղ մոտ եկավ, գամվեց իր դիմաց
Հայերի կողմից առաքված մի ծեր.
«Ինչ ուզես, կտանք, ոսկի, կայք ու գանձ,
Միայն թե մեզ թող մատյանները մեր»:

Եվ կաղ էմիրը մռայլ մոլտաց.
«Ես կխնայեմ ձեր կյանքը, հայեր,
Միայն թե ձեր այս թղթերի դիմաց
Տվեք ձեր ոսկին, զարդն ու զուգսը ձեր»:

Ու բերին ամեն շենից ու տնից
Փրկելու համար մատյանները սուրբ
Ապարանջաններ, վզնոց, մատանի,
Հարսները՝ օղերն իրենց նրբանուրբ:

Փրկվեցին հայոց գրքերը այսպես,
Այսպես ապրեցին դարից մինչև դար,
Ու բարբարոսը զգաց վերջապես,
Թե ինչ է գիրը հայ հոգու համար:

ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ



# Վարքի գնահատական

Մենք այդպես էլ չէինք հասկանում, թե հերթական քառորդն ավարտելիս մեր վարքի դիմաց «լավ» կամ «գերազանց» գնահատականը ինչպես էր դրվում: Մեզ թվում էր, թե դա ուսուցչից թաքուն ինչ-որ մեկը նվիրել է մեզ, և շտապում էինք քառորդի ամփոփաթերթիկներն անմիջապես ցույց տալ մեր ծնողներին, որովհետև համարյա բոլորս էլ «գերազանց» էինք ստանում: Բայց տանը, վկայականներն ստուգելիս, մեր ծնողները այս կամ այն առարկայի «գերազանց»-ները ու «լավ»-երը հաշվելով, միշտ աչքաթող էին անում վարքի գնահատականը: Մենք նախօրոք գիտեինք, որ նրանք այդպես պիտի անեն և, ճիշտ պահը կանխապես նկատի առնելով, արժանի անակնկալ էինք պատրաստել. «Վարքի «հինգն» էլ՝ եղավ վեց, բա վեց «հինգ» ունեմ, երեք հատ «չորս», էդքանը լավ չի՞, որ ասում եք՝ չես սովորում, չես սովորում»: «Բա ոնց,— ասում էին ամռան աշխատանքի մեր ընկեր հայրերը,— հայոց լեզուն «չորս» է, գրականությունը «չորս» է, մաթեմատիկան «չորս» է, վարքն է աչքս կոխում, վարքը ամենքին էլ «հինգ» են դնում»: Մեր դասարանցիների բոլորի տներում այդ գիշերների պատմությունը նույնն էր: Մենք մինչև վիճում էինք, որ վարքը լավ առարկա է ու նրա «հինգն» էլ է հայոց լեզվի «հինգի» պես, մեր հայրերը վերջնականապես էին մեզ խճճում վարքի իրենց պատկերացումներով: Վեճից հետո, թեյի ժամին նրանք հանկարծ իրենց աշակերտության ժամանակն էին հիշում. «Հողմը մեգով երկինքն առնում, Գալարում է բուքը ձյան, Մին մանկան պես լաց է լինում, Մին ոռնում է զերթ գազան... Հովհաննես Թումանյանը էդպես էնքան է գրե՛լ, կարդո՞ւմ եք, որ իմանաք»: Մենք անմիջապես ասում էինք. «Ձմեռվա իրիկունը» Հովհաննես Թումանյանը չի գրել»: «Ըհը, հետո էլ ասում ես՝ վարքս «հինգ» է, բա է՞դ է վարքդ, հորդ սխալ ես հանում,— ասում էին արտաքուստ վշտացած, ծածուկ ծաղրով,— է թող Պուշկինը գրած լինի, բայց դե փոքր ախպերներիդ մոտ լավ չի, որ էդպես կոշտ ուղղում ես հորդ, բա, ա՛յ խելացի, Պուշկինը էդպես հայերեն «զերթ»-ը, բանը ո՞րտեղից գիտեր, որ գրեր»:

Մենք այդպես էլ մեզնով հպարտանում ու չէինք հասկանում, թե վերջապես ինչ առարկա է վարքը, թե ինչ կապ ունի առավոտները մեր ձյուն մաքրելու հետ և թե ինչու պիտի ասենք, որ «Ձմեռվա իրիկունը» Պուշկինը չի գրել, Հովհաննես Թումանյանն է գրել, որովհետև «զերթ»-ը, բանը մենք չգիտենք, Պուշկինը որտեղի՞ց պիտի իմանար: Բայց մենք գիտեինք, որ տան տղամարդ ենք մեծանալու, որ մեր հայոց լեզվով մենք ենք խոսելու, որ ձմեռվա իրիկունների հսկայական լռությունից մենությամբ լցվող մեր մեծերի ջղային համբերությունը մենք ենք խաղաղ, ուրախ կյանք դարձնելու, քանի որ մեզ հառված նրանց աչքերը սպասումով ու ակնկալիքով են նայելու, և տան տղամարդը անպայման պիտի իմանա, թե ինչու է ասում, որ «Ձմեռվա իրիկունը» Հովհաննես Թումանյանն է գրել: Մեր

հայրերը դա գիտեին ու դրանով իրար շատ էին նման, որովհետև իրենց ձմեռը, իրենց համբերությունը բքի տակ, անհանգստությունը՝ հեռուներում մոլորյալ ճամփորդի համար ու երազանքի պես պայծառ կարոտը ծովի այն ափին ապրող հավքի՝ նրանք ամեն օր ու յուրաքանչյուր մանրուքի մեջ վստահ ապրում էին:

Երբ մենք տղամարդ դառնայինք, այդպես պիտի լինեինք, բայց չգիտեինք, թե ինչպես պիտի այդպես դառնայինք, և այդ պատմությունը մեր կյանքում մնացել է որպես մի ժամանակ, որը չգիտենք՝ եղե՞լ է, հիմա՞ է լինում, թե՞ դեռ պիտի լինի, որովհետև դա կատարյալ օրինակի պես է մեզ հարազատ ու հեռու, և հա ուզում ենք մոտենալ ու չենք մոտենում: Չենք մոտենում, ոչ միայն որովհետև շատ է կատարյալ ու հեռու, այլ որովհետև դա իրենց ժամանակին է պատկանում: Բայց մենք էլ մեր ժամանակն ունենք, որտեղ կարողանում ենք մեզ դըրսևորել, մեր գործին նվիրել մեջներս եղած սերն ու ուժը, եռանդն ու կարողությունը: Ահա. գիտե՞նք, որ աղջիկը նուրբ է, ուրեմն՝ պետք է նրա հետ զգույշ վարվել, գիտե՞նք, որ հացը սուրբ է՝ պետք է այն հարգել, գիտե՞նք, որ ծերը վաստակած է, պետք է նրան պատվել, գիտե՞նք, որ տխրությունը, ամաչկոտությունը, թախիծը, զվարթությունը բոլորս էլ ունենք, և եթե դիմացինդ տխուր է, պետք է դա որպես քոնը ընդունել, և նաև գիտե՞նք, որ մեզանից փոքրից մենք ուժեղ ենք, ուրեմն՝ պետք է նրա հանդեպ հոգատար լինել: Այսպես բազմաթիվ բաներ գիտենք և համարյա թե յուրաքանչյուր րոպե, երբ տեղն է գալիս մեր իմացածն օգտագործելու, մենք դրանք հիշում կամ չենք հիշում, և եթե հիշում ենք, ապա հասկանում ենք, որ, իհարկե, մենք էլ մերը, մեր ժամանակինն ունենք և մեր ունեցածը սիրում ու նրանով հպարտանում ենք, քանի որ թեկուզ այդքանի մեջ էլ կարողանում ենք ինքներս մեզ արտահայտել:

Բայց մենք այսպես ձևակերպված չէինք մտածում, երբ երրորդ-չորրորդ դասարանցի էինք և արձակուրդի զանգից հետո պայուսակներով ջարդում էինք դպրոցի պատուհանների ապակիները: Ես գիտեմ, որ հիմա էլ են երրորդ-չորրորդ դասարանցի տղաները անհամբերությամբ սպասում մայիսի քըսանվեցի զանգին, որպեսզի երբ արձակուրդի մեծ ազատությունը պատկերացնեն, այլև չկարողանան զսպել մարդու ազատված հրճվանքը և ապակիները ջարդելուց հետո մինչև գարնան խոր գիշեր անկարգ թափառեն դաշտերում, անխընա լողանան գետում ու, գիշերվա քունը վանելու ուրիշ այլ միջոց չգտնելուց, լուռ հոգնեն: Եվ երբ գիշերը մենակ մընան անկողնում ու հոգնածությունը մարմինները լրիվ բռնի, տեսնեն, որ, ախր, առանց ապակիները ջարդելու էլ կարող էին արձակուրդի ուրախությունը ընդունել և առհասարակ դպրոցի վրա ինչո՞ւ էին չարացել (չնայած չէին էլ չարացել. պարզապես թվում էր, որ եթե դպրոցը ապակիներ չունենա, ապա դասեր է՛լ չեն լինի, և այդ պահին համոզված էին, որ դրանք աշխարհի վերջին ապակիներն են): Սակայն չէ՞ որ դպրոցն իրենցն է, որտեղ համարյա միշտ ուրախ է եղել, և այդ պահից էլ սկսելու են կարոտել դըպրոցին: Բայց առավոտյան դպրոցի դուռը փակ կտեսնեն, պատուհանների տակ՝ ապակիների փշրանքներ, բակը՝ դատարկ, շրջակայքը՝ լուռ, և նրանք անպայման միմյանցից թաքուն կզգան ու, այդ տըխրությունից անխնա դատարկվելով, տնօրենին կխոստովանեն, թե՝ գիտեք, ախր, իրենք չհասկանալով... որ պատահաբար... որ հայրիկին կասեն ու վաղը տընից երկո՛ւ հատ կբերեն (քանի որ նահանջող տխրությունից խոստովանությունը այնքան բարձր ու ազնիվ կթվա, որ հայրերի այդ «նվերին» միանգամայն արժանի կերևան), խնդրում եմ ներեք... կարելի՞ է գնալ. մերս ասել է՝ մինչև կթից գամ, էն երկու-երեք մարգի բուկլիցը արած լինես:

Մենք հետո ամբողջ ամառ խոտ էինք հավաքում ճահճոտ մարգագետիններից, և երբ հացի ժամին ճահճաջրի վանդգույն թանձր ժանգը կարծր չորանում էր մեր քերծված, փշփշոտ ոտքերին, տանջվում էինք, թե ինչու քաղաքացի



չենք. քաղաքացի լինեինք՝ հիմա պաղպաղակ կուլտեինք, կինո կգնայինք և մեր շորերը նոփ-նոր կլինեին: Բայց շրջակայքում համարյա թե քաղաքացի մեր ուսուցիչներն էին միայն, քանի որ նրանք կարողանում էին գրական խոսել, իսկ հայրերի հետ՝ մեր խոսած հայոց լեզվով, և այդ գրական լեզվի համար էինք նրանցից քաշվում: Գյուղի մեր հողի վրա հայոց մեր լեզուն միակ-միանձնյա էր նըստած, այնտեղ գրականը չէր հասկացվում՝ եթե ապուրին ճաշ ասեին՝ այդ ցերեկհացը չէր ուտվի, եթե խորոզին աքաղաղ ասեին՝ այդ աքլորից ծուղրուղու չէր լսվի: Եթե մենք խոտ էինք ասում, հասկանում էինք միայն սարի մրմուռ, մանր ու ընտիր խոտը, որ ծփում էր կլորլանջ մեր սարերում, իսկ խոտը հնչում էր «խուոտ» ձևով՝ ճիշտ ու ճշգրիտ բըռնելով սարալանջերի կորությունը: Հետագայում գյուղից դուրս եկողները, ինչքան էլ հեռանային մեր «հայոց լեզվից», նույնիսկ երեքօրյա հյուր վերադառնալիս, նրանց ոչ ոք չէր հասկանում՝ մինչև որ կարողանում էին մեր հնչերանգը բռնել: Մեր այդ կռիվը ամեն սերնդի համար սկսվում էր հարևան գյուղի իրենց ընկերներին ծաղրելով, քանի որ նրանք մեր «ատանկ»՝ «այդպես»-ը «էդման» (էլի այդպես) էին ասում: Ուսուցիչներից այդպես քաշվում էինք մինչև հնձի տարիք՝ ութերորդ դասարան, իսկ ութերորդի ամառը, գերանդի սրել չիմանալով ու թև-մեջքներիս զոռ տալով, նրանց հետ հունձ էինք անում: Դա այն ժամանակն էր, երբ հասկանում էինք, որ ուսուցիչները մեր գյուղացի՝ մեր լեզվի ժողովուրդ են, բայց և կա ընդհանուր հայոց լեզու, որն անպայման բոլորս պետք է իմանանք, ու արդեն մինչև Երևան ընդունվելու գնալը գրական հայերենը մաքուր ու ճիշտ սովորում էինք: Բայց հնձի ժամանակ մտածում էինք, թե քաղաքի տղաները բոլորն էլ գերազանցիկներ են, որովհետև դասերը որ վերջանում են՝ նրանք ո՞ւր պիտի գնան. տուն, իհարկե, տուն պիտի գնան ու դա՛ս սովորեն: Եվ նրանք անպայման մեզանից խելացի տղաներ են. ավելի շատ բան են տեսնում, ավելի համարձակ ու խոհեմ են և իրենց իմացածի վրա վստահ: Մեզ նման չեն, որ գնան համալսարան ընդունվելու ու չնայած իմանան, որ «ամրապնդել»-ը բայ է, սակայն, քննողի դեմքի օտարությունից վախենալով, անմիջապես ասեն՝ չէ, չէ, բայ չէ, գոյական է, որովհետև «պինդ» բառի մեջ արմատ ու պնդություն են տեսել, որն էլ թվացել է շոշափելի առարկա:

Իսկ քաղաքի տղաները անծանոթ դեմքի վրա այդ օտարությունն էլ չեն զգում: Եթե դիմացինդ անծանոթ է, դա չի նշանակում, որ նրա մեջ արտառոց, քեզ միանգամայն անհայտ բան կա՝ է, նա էլ է մարդ: Երբ ես մայրաքաղաքի մի քանի



դպրոցներում եղա, շփոթվել էի, որ ա-
շակերտները կարող են առանց ուսուցչի
օգնության ու միայն իրենց ինքնուրույն
ճաշակով ընտրել բանաստեղծություն-
ներ ու անգիր սովորել, և հատկապես
այն գործերը, որոնք տվյալ բանաստեղ-
ծի ընտիր էջերն են: Օրինակ, մի դպրո-
ցում ուսուցիչն հարցնում էր, թե ո՞րն է
Չարենցի այն գործը, որ բնորոշ է նրա
ողջ ստեղծագործությանը: Աշակերտնե-
րը տատանվում էին ու անկեղծորեն ո-
րոնում, և մի աղջիկ արտասանեց «Մահ-
վան տեսիլ»-ը («Որպես լքված թավշու-
թակի ձգված մի լար»): «— Ոչ,— ասաց
ուսուցչուհին,— հապա մտածեք, երեխա-
ներ»: Ու տեսնելով, որ այդպես դժվար
թե իր մտածածն ասեն, հուշեց. «Ամ-
բոխները...», «...խելագարված»— խըմ-
բովին շրխկացրեց դասարանը (նույնիսկ
ոչինչ չիմացողն էլ այդ պահին միանում
է ընդհանուրին), թեև պարզ էր, որ ու-
սուցչին ենթարկվելով, ուրիշ կարծիք ու-
նեցողները մնացին իրենց կարծիքին:
Իսկ մի այլ դպրոցում գրականության ու-
սուցչուհին «Վերք Հայաստանի» վեպի ա-
ռաջաբանը դասարանի հետ վերլուծում
էր այնպես, կարծես բոլորով միասին
հենց այդ պահին առաջաբանն էին գը-
րում: Նրանք անգիր ասում էին հերթա-
կան հատվածն ու վերլուծում, և ես մը-
տածեցի, որ աշակերտների վերաբեր-
մունքը մարդու, բնության, առհասարակ
շրջապատի ու ընկերների հանդեպ հիմ-
նականում, այո, պիտի երևա թեկուզև
այն բանից, թե, իրոք, ո՞րն է Չարենցի
այն գործը, որ բնորոշ է նրա ողջ ստեղ-
ծագործությանը:

Մենք կարողանում ենք աղջկա հետ
զգույշ վարվել, հպարտ կռանալով՝ ըն-
կած հացը վերցնել, դնել պատին՝ ձմեռ
է, թռչուններն՝ սովա՜ծ-սոված, կգան ու
էս մերկ ցրտի մեջ մեկ էլ ընի՝ հաց: Դա
այնպես է մեզ դուր գալիս, որ անընդ-
հատ հայացքներս ընկած հաց են որոնում,
քանի որ սիրում ենք այդ հպարտ կռա-
նալը, թռչունին մեր՝ ուժեղի պաշտպա-
նությամբ ցրտից ծածկելը: Դա վերա-
դառնում, ավելի փափուկ գուրգուրան-
քով մեզ է զգվում, մեր սրտին տալիս
աշխարհի ճշմարտության ու գեղեցկու-
թյան համար վստահության խաղաղու-
թյուն, քանի որ արդեն շոշափելի է դառ-
նում մեր արարքի մեջ տեղավորված մեր
սիրտը, մեր տալիքը կյանքին: Կամ, ա-
հա, արտասանում ենք «Ես իմ ա-
նուշ Հայաստանի արևահամ բառն եմ
սիրում», և հստակ բացվում են այն բա-
ռերը, որոնցով միտք արտահայտելիս
կարողացել ենք ճշգրիտ ու լրիվ անվա-
նել մեր զգացումը, որ անընդհատ խու-
սափում-փախչում էր մեր լեզվի տակից,
իսկ հիմա այդ բառով միանգամայն կա-
յուն ու սեփական-հարազատ բացվում,
կանգնում է մեր դեմ: Ու թրթռում է խա-
ղաղ ուրախությունը, քանի որ այնտեղ
լրիվ կա մեր ներկայությունն ու հասկա-
նալի դարձածի վստահությունը. և հիմա
լրիվ հավատում ենք, որ «Արարատի նը-
ման ճերմակ գագաթ չկա», չնայած որ
աշխարհագրությունից գիտենք բարձրա-
գագաթ, հավերժական ձյունով ծածկված
լեռների մասին:

Ահա, հիմա ասե՞մ, որ այս ամենն է
կոչվում վարք, և այդ «առարկան» գնա-
հատելիս ուսուցիչները մեր այդ պահ-
վածքն են նկատի առնում, որովհետև
վերջիվերջո, բոլորս էլ համաձայն ենք,
որ եթե մաթեմատիկայի դասը լավ չես
սովորել, չի նշանակում, թե կարող ես
նաև չվերցնել ընկած հացը, չտեսնել ու
չհասկանալ հոր հայրությունը, ընկերոջ
թուլությունը, վատ իմանալ մայրենի լե-
զուն, չսիրել գրողի այն գործը, որ ու-
սուցիչը չի հանձնարարել: Երբ մենք
տանը մոռացած տետրի կամ գրքի հա-
մար ուսուցչին ասում էինք, թե՝ տանն
եմ թողել, անպայման հուզվում էինք,
պատկերացնելով, որ տնեցիներն հիմա
մտածում են, թե՝ մեր տղեն դպրոցում է,
դասատուն դաս է հարցնում, նա էլ
«հինգ» է ստանում, ուրեմն՝ լավ գործի
է,— հիմա սոված, մրսած կգա: Եվ եթե
սեղանին խնձոր դրել, ուտում են, ապա
մեր մայրերը երեք հատ վերցնում, մեզ
համար պահում էին, ու ոչ ոք դա չէր ու-
զում նկատած լինել, որովհետև բոլորն
էլ այդ երեք խնձորը մեր այդ օրվա գոր-
ծին արժանի էին համարում: Մեր ուսու-
ցիչները տեսնում էին, որ մենք իրենց
առաջ կարմրած կանգնել, մեզ այդ երեք
խնձորից արդեն մտովի զրկել ենք, և
նրանք ասում էին՝ լավ, մի հատ թուղթ
հանիր, թղթի վրա կգրես, տանն էլ տետ-
րիդ մեջ կարտագրես: Մենք ուրախանում
էինք ոչ թե խնձորների, այլ այն արժա-
նիության համար, որ մեր դեմքի վրա
պիտի տեսնեին մերոնք: Չնայած հնձվոր
տղամարդիկ մեր անվարժ հնձելու վրա
խոսում էին, հաճախ էլ, երբ ցերեկհա-
ցից հետո պարապ մնալով, շոգի նինջ էր

իջնում վրաները, ծաղրում էին հնձվորի իրենց լուրջ մանկությանը չնմանվող մեր տղայությունը, այնուամենայնիվ, մեր ուսուցիչները մնում էին մի տեսակ կողմնակի և լուռ: Նրանք գիտեին, որ այդ պահին իրենց ասած խոսքը մեզ համար ծանր կլինի, որովհետև եթե ասեին, թե՝ այո, տղաներ, խնամքով չեք հնձում, մենք այդ նախատինքից հետո լավ հընձվորի հույսը չէինք ունենա՝ «երկուս» չէ՞, որ հաջորդ դասին «հինգ» ստանայինք, ծածկեինք, քանի որ մենք կարող է ինժեներություն սովորելու չգնայինք, բայց դե հնձվոր անպայման պիտի դառնայինք: Ու միայն աշնանը, դասերն սկսվելիս, նրանք ցածր դասարանցիներին պատմում էին, թե մենք ինչ տղերք էինք՝ գիտեք, որ հնձվորները արդեն ծերացել են, և տղաներն էին մեր առաջին ու վարպետ հնձվորները, նրանք և՛ լավ հունձ արեցին, և՛ հիմա էլ դասերն են լավ սովորում. ա՛յ, դուք, փոքրերդ, անպայման պիտի աշխատեք նմանվել նրանց:

Իսկ իմ ասած ժամանակը այնքան էլ հեռու չէ, և մեր այդ ուսուցիչը հենց հիմա, հենց այսօր գրականության դասն է վարում: Ստեպ-ստեպ ածուխը ճտճտացնելով, դասասենյակում տան լռություն է պահում կլոր վառարանը: Պատուհանի տակ դիզվում, լուսամուտի գոգին է հասնում խոշորփաթիլ ձյունը, ապակիների մշուշների ու ձյան աղոտ թափանցողության միջով մեկ-մեկ անցնում, անհետանում են իրական չափերից զրկված մանր, կծկված տեսքով գյուղամեջ գընացող տղամարդիկ: Դասարանում բոլորը գիտեն, թե ում տանը երբ են արթնացել, երբ են առավոտվա հացը կերել: Լսում են Հակոբ Պարոնյանի Աբիսողոմ աղային, բանաստեղծին, խմբագրին, քահանային ու անընդհատ խոսող Մանուկ աղային, և նրանց նմանեցնելով, հիշում իրենց գյուղացի այսինչին: Տղաները զրնգուն ծիծաղում են, որովհետև ծիծաղելի պատմություններից բացի նաև այն ուրախությունը կա, որ վկայականներում այս քառորդի վարքը էլի «հինգ» է: Նըրանք նախօրոք գիտեն, թե ծնողները ինչպես պիտի նայեն այդ «հինգ»-երին, և ճիշտ պահը կանխապես նկատի առած՝ դիպուկ հիշեցում են պատրաստել, քանի որ տանը, հայրերի հետ վարքի գնահատական ճշգրտելով պիտի իրենց կերած հացի արժանավորությանը հասնեն:

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

# Կորիզը

**Փոքրիկ, շեկլիկ մի կորիզ
Մոլորվել էր աշխարհում,
Տխուր, տրտում շրջելիս
Տեսավ բարակ մի առու:
Առուն ասաց՝ ա՛յ կորիզ,
Արի առնեմ քեզ մեջքիս,
Գնանք-փնտրենք ամեն տեղ,
Գուցե գտնենք քո այգին:
Իսկ կորիզը փոքր էր
Ու ոչ մի բան չէր հիշում,
Անգամ ստույգ չգիտեր,
Թե ինչ ծառից է սերում:
Ու գնացին միասին,
Ողջ աշխարհը անց կացան,
Կորիզն առվին պինդ կառչած՝
Գլորվում էր միշտ անձայն:
Որտեղ առուն կանգ առավ,
Կորիզն իջավ այդ հողին,
Բայց ոչ մի հող իր սրտից
Ծիլ չէր հանում արևին:
Այսպես երկար գնացին,
Մինչև հասան մի դաշտի,
Մեկ էլ՝ փոխվեց կորիզը,
Այնպես ցոլաց երջանիկ:
Թռավ իջավ մայր հողին,
Առուն ապշեց զարմանքից,
Բոլորը ծափ տվեցին
Ու պար եկան հրճվալից.
— Վա՛յ, ծիրանի կորիզն է,
Ո՞ւր էիր այսքան ժամանակ,
Արարատյան դաշտից դուրս
Ծիրանենին չունի կյանք:**





## ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

ԶՐՈՒՅՑ ՔՍԱՆԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# Երվանդ Սակավակյաց և Տիգրան Առաջին

Երվանդունիները սկզբում մարերի դաշնակիցներն էին, և Արարատի հայոց թագավորությունն իր անկախությունը պահպանում էր գրեթե իր ամբողջ տարածքում (Մեծ Հայքի սահմաններում): Բայց Մարաստանը ավելի ու ավելի հզորացավ, և հայոց երվանդունիները դարձան Մարաստանին ենթակա: Մեծ Հայքի արևելյան մասը Մարաստանը միացրեց իրեն:

Մ. թ. ա. 6-րդ դարի սկզբներին Փոքր Ասիայի հյուսիս-արևմուտքում հզորացավ Լյուդիա կոչվող պետությունը: Եվ ահա Մարաստանը պատերազմ սկսեց այդ պետության դեմ: Մարերի կողմից պատերազմին մասնակցում էր նաև հայկական զորքը: Դա մ. թ. ա. 590—585 թվականներն էին: Այդ ժամանակ մարական աշխարհակալ պետության զորքերի և Լյուդիայի միջև եղած սահմանը անցնում էր Հալիս գետով, որը միաժամանակ Փոքր Հայքի արևմտյան սահմանն էր:

Հայաստանը Մարաստանի նկատմամբ կիսանկախ վիճակի մեջ ընկավ: Երվանդունի թագավորները մեծ հարկեր էին վճարում Մարաստանին, զորք էին տրամադրում նրան: Հույն հեղինակ Քսենոֆոնը, որ ապրել է մ. թ. ա. 5-րդ դարում, գրել է, որ հայերն այդ ժամանակ ունեին 40 հազար հետևակ և 8 հազար հեծյալ զինվոր: Այս զորքի կեսը միանում էր մարերի բանակին, երբ սրանք պատերազմի մեջ էին մտնում մի այլ պետության դեմ: Հայկական զորքերը պահպանում էին նաև մարական մի շարք սահմանային ամրոցները:

Ծուտով հայոց գահ է բարձրանում Երվանդ Սակավակյացը: Այդ ժամանակ Մարաստանի թագավորն էր Աժդահակը (հունարեն՝ Աստիագես): Երվանդն իր դուստր Տիգրանուհուն ամուսնացնում է Աժդահակի հետ, և Տիգրանուհին դառնում է Մարաստանի թագուհի: Այդպես իր հարաբերությունը Մարաստանի հետ բարելավելով, Երվանդը սկսեց հզորացնել իր բանակը, նոր բերդեր կառուցեց: Ծուտով իրեն ուժեղ զգալով, նա հրաժարվեց Մարաստանին հարկ վճարելուց: Հայաստանը կրկին ձեռք բերեց իր լիակատար անկախությունը: Աժդահակը զորք ուղարկեց Հայքի դեմ: Հայերի և մարերի միջև պատերազմ սկսվեց:

Հետո հայերի դաշնակիցը դարձան պարսիկները: Նրանց փոքր երկիրը սեպագրերում կոչվում էր Պարսա, այն գտնվում էր այժմյան Իրանի հարավում, Պարսից ծոցի ափերին: Այդտեղ իշխում էին պարսիկ Աքեմեն նահապետի ժառանգները: Նրանցից Կյուրոս II-ը հայոց Երվանդ Սակավակյաց թագավորի որդու՝ Տիգրանի ընկերն էր: Կյուրոսը և Տիգրանը սկզբում ծառայում էին Աժդահակի մարական զորքում որպես զորապետեր: Նրանք միասին որսի էին գնում, բարեկամություն անում: Պարսան գտնվում էր Մարաստանի գերիշխանության տակ:

Ծուտով Կյուրոսը դարձավ Պարսայի թագավոր, բայց՝ ենթակա Մարաստանին: Նա զորք հավաքեց, ապստամբեց Մարաստանի դեմ: Սկսվեց պատերազմ երկու երկրների միջև: Պատերազմը տևեց երեք տարի՝ մ. թ. ա. 555-ից մինչև 553 թվականը: Տիգրանը, որպես Կյուրոսի դաշնակից, հայկական զորքով մասնակցում էր այդ պատերազմին: Մարերը պարտվեցին: Պարսիկները գրավեցին Մարաստանի մայրաքաղաք Եկբատանը, Աժդահակ թագավորը գերի ընկավ պարսիկների ձեռքը:

Այս դեպքերի մասին գրել են մի քանի հին պատմիչներ, հատկապես հույն Քսենոֆոնը իր «Կյուրոպեդիա» գրքում, որը նվիրված է Կյուրոսի կյանքի նկարագրությանը: Այդ դեպքերի մասին գրել են նաև հույն Հերոդոտը, որ նույնպես ապրել է մ. թ. ա. 5-րդ դարում, մեր Խորենացին

և ուրիշ հեղինակներ: Այժմ, համեմատելով այդ բոլոր գրքերը, պարզում ենք այն ժամանակների իրական պատմությունը:

Տիգրանը, դառնալով հայոց թագավոր, վերանվաճեց Մեծ Հայքի արևելյան այն հողերը, որ գրավել էին մարերը: Խորենացին այսպես է նկարագրում Տիգրան թագավորին. «Այս և այսպիսի շատ բաներ բերեց մեր աշխարհին այս խարտյաշ


Հայոց Երվանդ թագավորը

և մազերի ծայրը գանգուր Երվանդյան Տիգրանը՝ գունեղ երեսով, քաղցր նայվածքով, ուժեղ սրունքներով, գեղեցիկ ոտքերով, վայելչակազմ և թիկնավետ, կերակուրների և ըմպելիքների մեջ՝ պարկեշտ»:

Այդ ժամանակ էր, որ հայերն իրենց մայրաքաղաքը Երվանդավանից, այսինքն՝ Վանից, տեղափոխեցին Արա-մայր, որն սկսեց կոչվել Արմավիր: Հիշենք, որ այդ քաղաքը հիմնել էր դեռևս Արա Առաջինը: Արմավիրը երկրի կենտրոնում էր, ավելի հեռու Մարաստանից ու Պարսկաստանից: Ուրեմն և՝ ավելի ապահով էր: Ահա այդ ժամանակներից Արարատի թագավորության անունով սկսեց կոչվել Մեծ Հայքի միայն կենտրոնական աշխարհը՝ **Այրարատ**, որտեղ Արմավիր մայրաքաղաքն էր գտնվում:

Տիգրան թագավորը Մարաստանի պարտված թագավորի մերձավորներին և պարսիկներից փախած շատ մարերի, մեծահոգաբար թույլ տվեց բնակվելու Մասիսի արևելյան կողմում՝ մինչև Գողթըն գավառի սահմանները, մեծ մասամբ՝ Արաքս գետից հարավ (Վասպուրական աշխարհի հյուսիս-արևելյան մասում): Նրանք հաստատվեցին այդտեղ և հավատարիմ էին հայոց թագավորին: Այդ պատճառով հայոց պատմության մեջ Հայքի այդ շրջանը երբեմն կոչվում է Մարաստան:

Հայքի անկախությունն այս անգամ երկար չտևեց: Աքեմենյան Կյուրոսը, որը հետո կոչվեց Կյուրոս Մեծ, պարսից պետությունն անընդհատ հզորացնում էր: Նա գրավում էր հարևան բոլոր երկրները: Մ. թ. ա. 549 թ. Կյուրոսը գրավեց Պարսայի հարևան հինավուրց Էլամը, որի մայրաքաղաք Շոշը դարձրեց իր պետության մայրաքաղաքը: Ապա հպատակեցրեց Պարթևստանը, որը գտնվում էր Միջին Ասիայի հարավում, գրավեց Վրկանաց աշխարհը (Հիրկանիան), որ գտնվում էր Կասպից ծովի հարավ-արևելյան ափերին: Մ. թ. ա. 547 թ. Կյուրոսի զորքերը մտան Հայք, որի միջով նրանք շարժվում էին դեպի արևմուտք՝ Լյուդիայի դեմ պատերազմելու:

Այդ ընթացքում Պարսկաստանը և Հայքը դաշնակիցներ էին, բայց Պարսկաստանը աստիճանաբար սկսում էր գերիշխել Հայաստանի վրա:

Կյուրոսն իր զորքով շարժվեց դեպի


Խեցեգործության նմուշ Արարատի թագավորության ժամանակաշրջանից

Լյուդիայի մայրաքաղաք Սարդեսը: Այդ զորքերի կազմում էր նաև հայկական զորաբանակը: Շուտով Կյուրոսի զորքերը հասան Լյուդիա և պաշարեցին նրա մայրաքաղաքը: Մ. թ. ա. 547 թ. պարսկական զորքը գրավեց Սարդեսը և գերի վերցրեց Լյուդիայի թագավոր Կրեսոսին, որը համարվում էր հին աշխարհի ամենահարուստ մարդը:

Այդպես, Կյուրոս Մեծը հիմնեց Պարսկաստանի Աքեմենյան կայսրությունը: Նա գրավեց նաև Բաբելոնը (մ. թ. ա. 639 թ.), ամբողջ Միջագետքը, հետո՝ Բակտրիան (այժմյան Աֆղանստանը), ամբողջ Միջին Ասիան, հասավ մինչև Հնդկաստան: Պարսից Աքեմենյան պետությունը դարձավ ամենահզորն ամբողջ աշխարհում: Այն տարածվում էր Փոքր Ասիայի ամենաարևմտյան ափերից մինչև Հնդկաստան:

Այդպես, աշխարհում մի հզոր պետություն փոխարինում էր մյուսին. ուժեղը նվաճում էր ավելի թույլերին, հետո ինքն էլ նվաճվում: Դա օրենք էր դարձել:

Մ. թ. ա. 530 թ. օգոստոսին Կյուրոսը պատերազմում էր Միջին Ասիայի քոչվոր մասագետ ցեղի դեմ: Այս անգամ անհաղթ Կյուրոսը պարտվեց և սպանվեց ճակատամարտերից մեկում: Աքեմենյան Պարսկաստանի գահ բարձրացավ Կյուրոսի որդի Կամբիսը:

Հայաստանը դարձել էր Աքեմենյան Պարսկաստանին հպատակ շատ երկրներից մեկը: Այդ հպատակ երկրները կոչվում էին սատրապություններ: Երվանդունիների թագավորական տունը շարունակում էր իշխել, բայց՝ Պարսկաստանից կախյալ վիճակում: Նրանք Հայքում սատրապներ էին: Հայերն այդ ժամանակ պարսից արքունիքում էլ պատվավոր տեղեր ունեին: Պարսկական զորքերի հրամանատարների մի մասը հայեր էին: Նրանցից էր Դադարշիշը, որը Բակտրիայի սատրապն էր և հետո դուրս եկավ Հայքի դեմ: Հայ էր նաև պարսից զորապետներից Արաքան, որը հետո հայերին շատ օգնեց:

Իրանյան ազդեցությունը Հայքի վրա ուժեղանում էր: Հայերը նույնիսկ սկսեցին մոռանալ իրենց աստվածներին՝ Հայկին, Թեշիբին, Շիվինին և մյուսներին: Նոր աստվածներ էին հանդես գալիս՝ պարսկական աստվածների նման: Հայոց լեզվի մեջ էլ մտնում էին պարսկական բառեր:

(շարունակելի)

# ՏԵՂԱՆՈՒՆԸ ՊԱՏՄՈՒՄ Է:



ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

## ԱՎԱՐԱՅՐ

Ավարայր է կոչվում Վասպուրական նահանգի Արտազ գավառում, Տղմուտ գետի հովտում գտնվող և՛ հին գյուղը, և՛ նրա կողքի դաշտը: 451 թվականի մայիսի 26-ին այստեղ տեղի է ունեցել մեծ ճակատամարտ՝ ապստամբ հայկական ուժերի և պարսկական բանակի միջև: Դաշտի ու գյուղի անունով այն կոչվել է Ավարայրի ճակատամարտ: Դա եղել է հայ ժողովրդի ըմբոստ ոգու ամենապայծառ փայլատակումը: Մարտի ժամանակ զոհվել է հայոց քաջարի սպարապետ Վարդան Մամիկոնյանը:

Ավարայրի դաշտն ուներ իր երկրորդ անունը՝ Շավարշական: Տեղանքն այս անունով է կոչվել Ավարայրի ճակատամարտից ուղիղ հազար տարի առաջ՝ մեր թվականությունից առաջ 449 թվականին: Շավարշ (օտարները նրան կոչում էին Սաբարիս) անունն է կրել հայոց Երվանդ Սակավակյաց թագավորի որդիներից մեկը: Զրույցն ասում է, թե արքայազն Շավարշը եղել է բազմահմուտ նր-

ձիույգավար: Նա սիրում էր Արտազի դաշտում մրցասպարեզ դուրս գալ պարսիկ իշխանազունների հետ և հաղթել նրանց:

— Չէ, այս մրցարանը միայն Շավարշին է ժպտում,— ասում էին մյուս ձիույգավարները,— սա Շավարշական մրցավայր է:

Այսպես՝ Շավարշական մրցավայր, Շավարշական մրցավայր ասելով, դաշտը կոչվեց Շավարշական մրցավայր, որ սեղմվեց ու դարձավ Շավարշավայր: Հետո բառից աղվեցին երկու «շ» հնչյունները, և մնաց միայն Ավարայրը: Այսպես աղավաղումից ծնվեց նոր անունը, բայց, զարմանալիորեն, առաջինը՝ Շավարշականը, մոռացության չտրվեց: Եվ չնայած ճիշտը Շավարշականն է, բայց ժողովրդի համար սրբացած է Ավարայր անունը:

## ԱՐԱԳԱԾ

Ասքապահ են հայոց լեռները, որն էլ փորփրես, նախ ասք է դուրս գալիս, հետո՝ ուրիշ բան: Բայց դե լեռ էլ կա, լեռ էլ: Լեռ կա՝ մի ասք ունի, լեռ կա՝ հազար ու մի: Ասում են Արագածն իննհարյուր իննսունինը ասք ունի: Չեն կլորացնում, իննհարյուր իննսունինը ուրիշ է, հազարն ուրիշ, որովհետև մեր հներն ասում էին, թե իննհարյուր իննսունինը ճշմարիտ թիվ է, հազարը՝ ճշմարտանման:

Երբ Արա Գեղեցիկն ընկավ Շամիրամի դեմ մղած կռվում, հայերն իրար անցան: Մտահոգություններից մեկն էլ դարձավ Արա Գեղեցիկի գահը՝ հայոց սրբազան սոսու փայտից պատրաստված, ադամանդազարդ արքայական աթոռը թշնամու աչքից հեռու պահելը: Արա Գեղեցիկի մերձավորները մտմտացին, մըտմըտացին և որոշեցին գահաթոռը տանել ու թաքցնել Մասիսի դիմաց գտնվող քառագագաթ լեռան վրա:

Շամիրամի զորականները հոտն առան և սկսեցին ոտի տակ տալ հսկա լեռան բոլոր լանջերը: Բայց ոչ մի շամիրամական չկարողացավ ոտք դնել չորս գագաթներին, որովհետև հենց այդ օրերին լեռան վրա առաջին անգամ առատ ձյուն տեղաց և ծածկեց ամեն բան: Ձյունն այնպես կերպարանափոխեց լեռնակատարը, որ գահաթոռի տեղը կորցրին նաև հայերը:

Ժամանակներ անցան, և մոռացության ձյան տակ շամիրամներ ծածկվեցին: Բայց մարդիկ ո՛չ Արա Գեղեցիկին մոռացան, ո՛չ էլ նրա ադամանդակուռ գահաթոռը: Նայում էին դեպի քառագագաթ լեռն ու ասում՝ այնտեղ Արայի գահըն է: **Արայի գահ**, Արայի գահ ասելով՝ լեռը կոչվեց Արագահ, որը հետո հնչյունափոխվեց ու դարձավ Արագած:

## ԱՐԱԾԱՆԻ

Հին հայերի ամենասրբազան գետը եղել է Արածանին, որ սկիզբ է առնում Ծաղկանց լեռների հյուսիսային լանջերից, ապա, անցնելով խոր կիրճերով, հասնում Մշո դաշտ և գնում ու խառնվում Արևմըտյան Եփրատին: Նրա ափերին կան բազում տաք աղբյուրներ, որ մեր նախնիք կոչել են Վարշակի ջերմուկներ:

«Քսանչորս հիվանդություն բուժող» Վարշակի ջերմուկի նստվածքներից ամեն մի հազարամյակում մի բնական կամուրջ է ստեղծվում և կամար կապում գետի վրայով:

Արածանիի ակունքների մոտ է եղել հայոց զորքի գլխավոր բանակատեղին՝ Շահապիվանը, ուր աշխարհաժողովներ էին գումարվում և լուծվում հայոց աշխարհի համար կարևոր այս կամ այն հարցը: Հենց այստեղ էլ հայերը կատարում էին իրենց ամենամեծ տոնախմբությունը՝ Նավասարդյան տոնը: Մեր թվականությունից առաջ, 68 թվականին հայկական բանակը Տիգրան Մեծի գլխավորությամբ Արածանիի ափերին ջարդեց հռոմեական լեգեոններին: Հայ ժողովուրդը այս գետում է մկրտվել ու քրիստոնյա դարձել:

Հնամենի զրույցները հավաստում են, թե դրախտը եղել է Արածանիի հովտում:

Ասում են Հայոց Արամ թագավորը շատ էր սիրում զբոսնել այս գետի ափերին: Այստեղ Արամը մի տեսակ մանկանում էր, դառնում մեղմաբնույթ ու բարի: Եվ մարդիկ ասում էին՝ թե ուզում ես Արամին ճանաչել, գնա հայոց սրբազան գետի ափ: Հին հայերենում դա հնչում էր այսպես՝ Արամին ծանիր, այսինքն Արամին ճանաչիր: Արամին ծանիր, Արամին ծանիր ասելով՝ գետը կոչվեց Արամածանիր, որ հնչյունափոխվեց ու դարձավ Արածանի:



Ռուբէն Սևակ
1885—1915

## Երնէ՜կ, ջո՜ւր

Ո՜վ պիտի երգէ քու անփառունակ
Կյանքիդ միամիտ տաղը, մատա՜ղ ջուր,
Որ լո՜ւյծ դալլալի մը պես շարունակ
Կփրփրիս, կ'երթաս դաշտերուն մեջ, ուր
Դարե՜ր դարերով ե՜րգդ է գոհունակ:

Ո՜վ պիտի պատմե վազքերդ մշտոլոր
Վայրի վարդերու երազանքն ի վար.
Ո՜վ պիտի ցույց տա փրփուրներուդ խոլ
Հնիհն կյանքիդ սերերն հոգեվար,
Տարփոտ սեզերու շոյանքն ալ բոլոր:

Լուռ անրջանքի պահուն ցայգային,
Ո՜վ պիտի պատմե խիճերուդ լեզուն,
Ու հեքիաթունակ սերն ուռենիին,
Երբ մութ գիշերով իրեն ազազուն
Ոստերը փախչող հոգվույդ կհայի՜ն:

Միամի՜տ վըտակ, դարերե ի դար
Դուն մամռոտ ճամփեդ կ'երթաս անմոլոր,
Ու երբ կմեռնին շուրջդ անմխիթար՝
Գարնայնի գույն-գույն ծաղիկներդ բոլոր,
Երկու քարի մեջ կ'երգե՜ս անդադար:

Երնե՜կ քեզ, վտա՜կ, մեռնիլ չունիս դուն.
Արցունքե մարմինդ կվարես անվերջ,
Գիշերներու մեջ միայնակ արթուն,
Անսկի՜զբն, անվե՜րջ վտիտ փոսիդ մեջ
Կ'երգես. երնե՜կ, ջո՜ւր, վախճան չունիս
դուն...

Ու երբ այս տողերն մրոտող նիհար
Ձեռքեն օր մը լո՜կ պուտ մը հող ապրի,
Ուրիշ քերթող մ' ալ՝ ինծի չափ հիմար՝
Պիտի գա հարկավ երգերըդ վայրի,
Հանգի, չափի տակ առնելու համար:

Մինչ հավերժորեն կյանքո՜տ, զվարթո՜ւն,
Պիտի կարկաչե քու ջուրդ հարաշարժ՝
Հեգնելով արվեստն ու կյանքը մարդուն...
Ո՜վ անմահության ստվե՜ր գետնաքարշ.
Վտա՜կ, երնե՜կ քեզ, մեռնիլ չունիս դուն:

## Հայաստան

Ո՞վ կույա այսպես խշտյակիս շեմքին.
— Քո՛յր, դարիպն է, բա՛ց:

Կմա՞խք մը կ'անցնի դուրսեն լալագին.
— Սովն է, դուռըդ բա՛ց:

Տապա՞րն է ջախջախ դռանս կուրծքին.
— Ջա՛րդն է, դուռըդ բա՛ց:



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



ԳԵՎՈՐԳ ՍԱՐԳՍՅԱՆ, 13 տ.
ԼՂԻՄ, Ստեփանակերտ

ՄԱՐԻԱ ՉՈԲԱՆՅԱՆ,
ք. Կիրովական, № 10 միջն. դպրոց, 7-րդ դաս.



ԻՆՆԱ ԻՍՐԱՅԵԼՅԱՆ
ԼՂԻՄ, Ստեփանակերտ





Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

# ԲԱՂՐԱՄՅԱՆ

Բաղրամյան տանող մայրուղին անցնում է Արարատյան դաշտի հրաշալի խընամված այգիների, խաղաղ հանգչող շեների ու ճանապարհի երկու կողմերում սաղարթներով կամար տված հին ու հըզոր ծառերի միջով: Այսպես գնում, անցնում ենք Հոկտեմբերյանի վերջին գյուղը ևս, ու դեռ հեռվից երևում է շրջանի մուտքն ազդարարող տուֆակերտ կոթողըն ու հուշաքարը. Բաղրամյանի շրջանի հյուսիսային դարպասն է, մուտքը՝ շատ հանդիսավոր ու գեղեցիկ: Շրջանի գլխավոր ճարտարապետ և այս հուշարձանի հեղինակ Աշոտ Հակոբյանը ջանացել է մըտահղացման ու գունային ներդաշնակ լուծումով եկողին նախապես տրամադրել, և դա նրան հաջողվել է. հուշարձանը հողի ու մարդու անվախճան դաշնության, բերք ու բարու, պտղաբերության ու հավերժության խորհրդանշան է: 16 մետրանոց սյունը, որի վրա երկու լեզվով տուֆագրված է «Բաղրամյան», վերից վար դըրվագված է հյուսկեն զարդաքանդակներով, արծիվներ՝ կտուցներին խաղողի ողկույզ, և կենաց ծառը: Կողքին հուշաքարն է, որի զարդանախշ կամարի տակ, պետական գերբի ներքո քարագրված է շրջանի ծննդյան վկայականը՝ ՀՍՍՀ Գերագույն սովետի հրամանագիրը. «Կազմել Հայկական ՍՍՀ Բաղրամյան շրջան, մայիսի 6, 1983 թ.»: Այսպես, ուրեմն, ուղիղ չորս տարի առաջ Հոկտեմբերյանի կիսաանապատ հողերի և Թալինի քարաստանների վրա Հայաստանում ըստեղծվեց պետական ու վարչական մեկ միավոր ևս՝ Բաղրամյանի շրջանը:

Ծնո՞ւնդ անվանել այն, թե վերածնունդ՝ դժվար է ասել: Երևի թե՝ երկուսն էլ, քա-

նի որ տարեգիրը շռայլորեն արձանագրել է նաև այս տարածքի պատմության մանրամասները, և հազարամյակներ անց նույն հողը վերստին կենդանացնող սերունդը հնարավորություն ունի այդ պատմության մեջ գիտակցորեն ճշգրտելու իր վարքն ու տեղը և իր ներկա կյանքն ապրել որպես անցյալի շարունակություն՝ նոր կյանքի պահանջներով: Այսօրվա բաղրամյանցու վարք ու կենցաղի, կեցության մեջ անպայմանորեն կա անցյալի ոգեղեն երանգը, վերստեղծելու, թվացյալ անհնարինը հնարավոր դարձնելու այն ուժը, որով նա մշակում, ծաղկեցնում է իր այգին, շենացնում է հողը, տներ է կառուցում: Իսկ պատմությունն ասում է. «Այս տարածքը մարդու բնակության վայր է եղել դեռևս նախապատմական շրջանում, մտել Հայաստանի առաջին պետական միավորներից մեկի՝ Արարատի, ապա Արտաշեսյան Մեծ Հայքի պետությանը նախորդած Երվանդունիների թագավորության տիրապետության տակ: Այստեղ, այժմյան Երվանդաշատ (Խերբեքլու) և Բագարան (Բախչալար) գյուղերի տարածքում է գտնվում Երվանդունիների թագավորության հայտնի մայրաքաղաքներից մեկը՝ Երվանդաշատը, որը 3-րդ դարում (մ. թ. ա.) փոխարինել է համեմատաբար աննպաստ դիրք ունեցող Արմավիրին: Երվանդաշատն իր մատույցները պաշտպանող Երվանդակերտ բերդավանի (Արաքսի աջ ափին) հետ կազմում էր մի ամբողջություն, հելլենական աննման կառույցների՝ պալատների, տաճարների, պաշտպանական հզոր պարիսպների մի հսկա համալիր, որի մասունքներն ու ավերակները պահպանվել են առ այսօր: Այնուհետև տարբեր ժամանակներում մինչև Արևելյան Հայաստանը Ռուսաստանի հետ միավորելը Արարատյան աշխարհի այս մասնիկը ապրում էր տնտեսական ու քաղաքական խիստ անկման շրջան. ամայանում էին բնակավայրերն ու ծաղկուն դաշտերը, բնակչությունը պարբերաբար ենթարկվում էր բռնությունների և հարկադրված էր լինում դիմել արտագաղթի»: Այստեղ տարեգիրը վերջակետ է դնում, վերջակետ դնենք նաև մենք ու շարունակենք Բաղրամյան նոր անունով վերածնված շրջանի նոր պատմությունը: Նոր պատմություն՝ նոր անուններով, նոր մարդկանցով:

Շրջանի ներկայիս տարածքը 45314 հեկտար է, բնակչության թիվը՝ 14851 մարդ: Վարչական կենտրոնը ժամանակավորապես գտնվում է Մյասնիկյան ավանում: 1984 թվի հուլիսի 9-ին շինարար Արամ Գրիգորյանը հանդիսավորապես դրեց Բաղրամյան ավանի հիմնաքարը, և սկսվեց քաղաքատիպ այս կենտրոնի շինարարությունը: Այն գտնվում է Մյասնիկյան գյուղից 7 կմ հյուսիս-արևմուտք, լեռնային գոգավորության մեջ, և ունենալու է ամֆիթատրոնի ձև: Ի տարբերություն արդեն հայտնի միատիպ կառուցապատման, այստեղ բազմահարկեր չեն լինելու, հիմնականում՝ երկհարկանի, բայց կենտրոնին հարող մի քանի փողոցներ ունենալու են գեղեցիկ ու ընդարձակ առանձնատներ՝ հողամասերով, այգիներով ու պարտեզներով, որով և մասամբ լուծվելու է նաև ավանի կանաչապատման խնդիրը: Արդեն ավարտվել է վարչական շենքերի շինարարությունը, շահագործման են հանձնըվել մանկապարտեզը, բնակելի մի շարք տներ, իսկ սեպտեմբերին 1176 տեղանոց տիպային դպրոցը իր դռները կբացի նորաբնակ աշակերտների առջև: Առհասարակ պետք է ասել, որ շրջանում զգալի ուշադրություն է դարձվում երեխաների բազմակողմանի դաստիարակության խնդրին, և մանկական հիմնարկների կառուցումը մղվել է առաջին պլան: Բաղրամյան ավանում նախատեսված է կառուցել պիոներ պալատ, կուլտուրայի տուն, մարզահամերգային համալիր, որն ունենալու է լողավազան, 500 նստելատեղով մարզադաշտ, մարզահրապարակներ, համերգային դահլիճ: Իսկ երեկոյան զբոսայգին մանուկներին կըզբաղեցնի կարուսելներով, տարբեր խաղերով, ամառային թատրոնով, արհեստական լճակներն ու ցայտաղբյուրները զովություն ու հանգստություն կպարգևեն ցերեկվա բարկ արևին դաշտ ու այգի մշակող բաղրամյանցիներին: Չէ՞ որ ավանի բնակիչները հիմնականում զբաղվելու են այգեգործությամբ, բանջարաբուծությամբ և պտղաբուծությամբ: Մինչև 2000 թվականն ավանի բնակիչների թիվը կհասնի 10 հազարի:

Տասնչորս գյուղ ու ավան ունի առայժմ Բաղրամյանը, որոնցից Հուշակերտը, Դալարիկը, Քարակերտը, Լեռնագոգը, Բագարանը, Երվանդաշատն ու Մյասնիկյանը շեն ու մարդաշատ գյուղեր են, իսկ Արևադաշտը, Տալվորիկը, Վանանդը,

Արգինան, Կողբափանն ու Արտամետը նոր-նոր կառուցվում, բնակեցվում են: Որքան գեղեցիկ անուններ ունեն այդ գյուղերը, և շինարարներն ինչ հոգածությամբ են կառուցում. խոպան հողերի վրա յոթ գյուղ ու ավան, Վանանդում՝ դպրոց, սահմանամերձ Բագարանում և Երվանդաշատում՝ կուլտուրայի հրաշալի պալատներ, դպրոցներ, Քարակերտում՝ երաժշտական դպրոց, պրոֆտեխուսումնարան և էլի ուրիշ կառույցներ, բայց ծավալուն շինարարությունը չի խանգարել, որ բաղրամյանցին հանրապետությունում առաջինը հանձնի բերքը: Ի դեպ, թե՛ շինարարական և թե՛ բերքահավաքի աշխատանքներին զգալի օգնություն են ցույց տալիս նաև դպրոցականները:

Դարերով չմշակված աղիգույն անապատի վրա ճաք է տվել ժամանակն ինքը, և հիմա բաղրամյանցու տաք ու մտերիմ ափի մեջ է օր-օրի այդ անապատը փափկում, ջերմանում, դառնում հող, ու բացվում են նրա դեռ սերմ չառած երակները, լցվում արյուն ավիշով:

Տալվորիկը չորրորդ գարունն է բոլորում, նորատունկ այգիները այս տարի բերք կտան, ավանի առաջին փողոցի առաջին տունը Միքայելյաններինն է, անցյալ տարի են եկել: Բնակարանամուտի հենց առաջին օրը նրանց հարկի տակ կրկնակի տոն եղավ. ծնվեց առաջին տալվորիկցին, որին կնքեցին ընտանիքի գլխավորի՝ Արտաշես պապի անունով: Այս գերդաստանի Ռուբեն ու Ռոբերտ որդիները օրնիբուն դաշտերում են, լավ մեխանիզատորներ են, իսկ Արտաշես պապը հյուսն է. ավանի առաջին տան հիմքը իր ձեռքով է փորել, առաջին շաղախըն ինքն է լցրել, և շեն օջախին միայն այս մանչուկն էր պակասում:

Արգինայի պետական տնտեսության սկիզբը 1983 թվականն է: Ավանի ապագա բնակիչները իրենց բարեմաղթությունների մեջ անպայման կհիշեն Պետրոս Ասատրյանին, Էդվարդ Ստեփանյանին, Ռոստոմ Արոյանին և մյուսներին, ովքեր առաջին ծառը տնկեցին, հիմնեցին տնտեսության առաջին այգին: Երիտասարդ շրջանը ունի նաև կոմերիտմիության իր առաջին դափնեկիրը՝ հացամթերքների կոմբինատի արտադրամասի պետ, ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար Սամվել Բաբկենի Պապոյան, ջահել, իր աշխատանքին, իր ընկերներին խորապես նվիրված մի մարդ: Այս մրցանակին արժանացել է 1985 թվականին, տեխնիկայի արդյունավետ օգտագործման, արտադրանքի որակի բարձրացման համար: Կապիտալ շինարարության բաժնի երիտասարդ ինժեներ Սամվել Հարությունյանը և Դալարիկի միջնակարգ դըպրոցի ուսուցչուհի Ռուզաննա Հյուսյանը իրենց ընտանիքն այստեղ են ստեղծել: Գյուղ եկած բոլոր մանկավարժները չէ, որ դիմացան, շատերը թողեցին, տարվա կեսից գնացին ետ, բայց դպրոցների կողքին շրջանում կառուցվում են ուսուցչի տներ, և եկողները, հավանաբար, հեռանալու պատճառ այլևս չեն ունենա, թեև պատճառն ամեն մեկը նախ իր մեջ պետք է փնտրի: Չէ՞ որ ավելի լավ պայմաններում չի աշխատում պիոներտան դիրեկտոր Գագիկ Նավասարդյանը. եղած-չեղածը 2—3 սենյակ՝ Մյասնիկյանի դպրոցի շենքում, բայց մաքրած ու բարեկարգված, վերանորոգված իրենց իսկ ձեռքով, և ի՜նչ հանգստություն, լուսավոր ինչ տրամադրություն է համակում ներս մտնողին: Պատկերասրահում ցուցադըրված պատանի նկարիչների գործերը գույների նուրբ ընկալման անկեղծ վերարտադրություն են, և դա Գագիկ Նավասարդյանի հենց առաջին դասի արդյունքն է: Հոգս ու պակասություններով լի նրա աշխատանքը, հավանաբար, կրկնակի դժվար կդառնար, եթե կուսշրջկոմի քարտուղար Ռայա Աղվանյանը նույնքան մտահոգված չլիներ պատանի ստեղծագործողներին տեղ ու հնարավորություն տալու և, առհասարակ, շրջանի մշակութային խնդիրներով: Եվ ինչ նախանձախնդրությամբ էր նա ստուգում ու վերափոխում հեղափոխության 70-ամյակին նվիրված միջոցառումների ծրագրի ամեն մի կետը, ինչպես էր ոգևորվում ու տեղում գործնական կարգադրություններ անում և կամ ինչպես էր զայրացել, երբ Հայհամերգի դերասանները խոստացել ու չէին եկել համերգի:

Բաղրամյանը կառուցող, տուն ու օջախ ստեղծող շատ մարդկանց կարելի է թվել. երևի բոլորին մեկ առ մեկ արժե, և նըրանց որդիներին ևս, քանի որ վաղը նըրանք են շարունակելու հայրերի սկսած գործը, որ մի օրվա, մի տարվա, մի կյանքի ապրել-վերջանալու բան չէ. հողի ու մարդու անվախճան կյանք է և այդ կյանքը ճշմարիտ է պետք ապրել:

**ՇՈՒՇԱՆ ՂԱԶԱՐՅԱՆ**

ԱԿՈՒՏԱԳԱՎԱ
ՌՅՈՒՆՈՍԿԵ
Ճապոնացի գրող
(1892—1927)

# Հայրը



Նկարը ՄԻՀՐԱՆ ՔԵՁՕՂԼՅԱՆԻ

Այս պատմությունը վերաբերվում է այն ժամանակներին, երբ ես սովորում էի միջնակարգ դպրոցի չորրորդ դասարանում: Աշնանը անց էր կացվում դպրոցական էքսկուրսիա. արշավ Նիկկոյից դեպի Ասիո, երեք գիշերատեղիներով: «Հավաք Ուենոյի կայարանում՝ առավոտյան վեցն անց երեսունին: Մեկնում՝ վեցն անց հիսունին», նշված էր ծանուցման մեջ, որ տվել էին դպրոցում:

Առավոտյան արագ նախաճաշեցի, դուրս թռա տնից: Ձնայած մինչև կայարան ընդամենը քսան րոպեի ճանապարհ էր տրամվայով, բայց սիրտս անհանգիստ էր: Կանգառի կարմիր սյան մոտ կանգնած սոսկալի սրտնեղում էի:

«Ափսոս, երկինքն ամբողջ ամպերի մեջ է: Մի՞թե անհամար գործարանների շչակները կտատանեն օդի գորշ քողը, կըվերածեն բարակ անձրևի»,—մտածում էի ես: Այս տխուր երկնքի տակ, ուղեկամըրջով ընթանում էր գնացքը: Մի սայլ էր գնում զինգործարանի ուղղությամբ: Բացվում էին կրպակների դռները: Կանգառում արդեն մի քանի մարդ էր հավաքվել: Նրանք մռայլ տրորում էին քնատ դեմքերը: Ցուրտ էր: Վերջապես մոտեցավ առավոտյան առաջին տրամվայը:

Երբ լեփ-լեցուն վագոնում մի կերպ ձեռքս գցեցի բռնակին, ինչ-որ մեկը խըփեց ուսիս: Շուռ եկա:

— Ողջո՛ւյն:

Նոսե Իսոոն էր: Ինչպես իմ, նրա հագին նույնպես կոպիտ մահուդից մուգ կապույտ համազգեստ էր, ձախ ուսից գցել էր փաթաթած շինելը, ոտքերին կըտավե կիսագուլպաներ էին, գոտուց կախված էին ուտելիքի տուփը և տափաշիշը:

Ես Նոսեի հետ էի ավարտել տարրական դպրոցը, նրա հետ էլ ընդունվել էի միջնակարգ: Նոսեի համար չկային առանձնապես սիրելի առարկաներ, չկային նաև ոչ սիրելի առարկաներ: Սակայն Նոսեն ուներ զարմանալի ընդունակություն. բավական էր թեկուզ մեկ անգամ լսեր որևէ նոր երգ, անմիջապես մտապահում էր մեղեդին: Երեկոյան,

հյուրանոցում, որտեղ մնում էինք էքըս-կուրսիայի ժամանակ, նա արդեն ինքնագոհ դնդնում էր երգը: Առհասարակ նա շնորհներ շատ ուներ, կարող էր կարդալ չինարեն բանաստեղծություններ, հին-հին ասքեր, ներկայացնել զավեշտական տեսարաններ, պատմել զանազան պատմություններ, ընդօրինակել Կաբուկիի դերասաններին, ձեռնածություն անել: Այս ամենից բացի ուներ մի ուրիշ զարմանալի ձիրք. մարդկանց ծիծաղեցնում էր անպահման զվարճալի շարժումներով ու դիմախաղով՝ վայելելով դասընկերների համակրանքը, այնինչ ուսուցիչներն էլ վատ չէին վերաբերվում նրան: Մենք հաճախ էինք միասին դպրոց գնում և միասին վերադառնում տուն, թեև առանձնապես մտերիմ չէինք:

— Այսօր ինչ-որ շուտ ես եկել:

— Ես միշտ էլ շուտ եմ գալիս,— այդ ասելով, Նոսեն քիթը վեր տնկեց:

— Կարծեմ վերջերս ուշացել էիր:

— Ուշացե՞լ էի:

— Ճապոներենի դասին:

— Ճիշտ է... Ոսմաքան էլ գոռգոռաց վրաս:— Նոսեն ուսուցիչների անունը տալիս միշտ բաց էր թողնում քաղաքավարական «սեն-սեյ»-ը:— Ի՞նչ անենք, ամենահոնչակավոր գեղագիրն անգամ սխալներ է թույլ տալիս:

— Ոսմաքան ինձ վրա էլ է գոռացել:

— Ուշանալո՞ւ համար:

— Ոչ, գիրքս էի մոռացել:

— Բայց շատ մզմըզն է այդ Ջինտան:— Ջինտան-կարմրամռութը մականունն էր, որով Նոսեն պարգևատրել էր ուսուցիչ Ոսմաքային: Այսպես իրար հետ խոսելով, հասանք Ուենոյի կայարանը:

Դժվարությամբ դուրս եկանք վագոնից, որ մեր նստելու պահից մինչև վերջ մըռնացել էր լեփ-լեցուն, և մտանք կայարան: Դեռ շատ վաղ էր, մեր դասարանցիներից եկել էին ընդամենը մի քանի հոգի: «Ողջույն», բարևեցինք մենք, հետո իրար հրմրելով նստեցինք սպասարանի նստարաններից մեկին և առանց դադարի սկսեցինք շատախոսել: Մենք դեռ այն հասակում էինք, երբ «տղաների» փոխարեն կրճատ «տղ» են ասում: Եվ ահա այդ «տղ» կոչեցյալների շուրթերից թափվում էին աշխույժ դատողություններ, խոսք ու զրույցներ առաջիկա էքսկուրսիայի մասին, մենք ձեռք էինք առնում մեր ընկերներին և չարախոսում ուսուցիչներին:

— Ծատ ճարպիկն է այդ Իձումին: Մի տեղից ուսուցչական «Չոյս»* է ճարել և այլևս ընթերցանություն չի պարապում:

— Հիրանոն ավելի ճարպիկ է: Քըննությունից առաջ եղունգների վրա մեկ առ մեկ գրում է բոլոր պատմական տարեթվերը:

— Ուսուցիչներն էլ պակաս ճարպիկ չեն:

— Իհարկե ճարպիկ են: Թեկուզ Հոմման: Մի կարգին չգիտի, թե «receive» բառի մեջ առաջ «e»-ն է գրվո՞ւմ, թե «i»-ն, բայց ձեռքն է առնում ուսուցիչների դասագիրքը և սովորեցնում, իբր ինքն ամեն ինչ գիտի:

Մեր միակ թեման ճարպիկներն էին, ուրիշ ոչ մի արժեքավոր բանի մասին չէինք խոսում, երբ Նոսեն հայացքը գըցեց կողքի նստարանին լրագիրը ձեռքին նստած, արհեստավորի տեսքով մարդու կոշիկներին և հանկարծ ասաց.

— «Քաշկինըի»:— Այդ տարիներին շատ էր տարածված նորաձև «Մակկինըի» կոչվող ոտնամանները, իսկ այդ մարդու փայլը կորցրած կոշիկների ներբաններն այնպես էին բերանները բացել, ասես քաշովի էին խնդրում:

— «Քաշկինըի», հոյակապ է,— բոլորս ակամա ծիծաղեցինք:

Ոգևորվելով, մենք մանրակրկիտ քըննում էինք սպասարան մտնող ամեն մեկին: Եվ ամեն մեկի վրա չարախոսության այնպիսի հեղեղ էինք թափում, որպիսին պատկերացնել անգամ չեն կարող նըրանք, ովքեր չեն սովորել Տոկիոյի դըպրոցում: Մեր մեջ չկար մի բարեկիրթ աշակերտ, որ այդ հարցում ետ մնար ընկերներից: Բայց Նոսեի բնութագրումները, որոնցով պարգևատրում էր ներս մտնողներին, ամենաչարն էին, միաժամանակ՝ ամենասրամիտն ու ծիծաղելին:

— Նոսե, Նոսե, նայիր այն լողլողին:

— Այ թե կերպարանք ունի, կարծես փորի մեջ կենդանի ձուկ լինի:

— Տես, տես, այն կարմիր գլխարկով բեռնակիրը ինչքան նման է նրան: Չէ՞, Նոսե:

— Ոչ: Նա իսկական Կառլոս Հինգերորդն** է: Նա էլ է կարմիր գլխարկ դրել:

---

*Չոյս— այն ժամանակ տարածված անգլերենի դասագիրք:

**Կառլոս հինգերորդ (1500—1558)—Իսպանիայի թագավորը:

Ի վերջո ծաղրաքանի դերում մնաց միայն Նոսեն:

Հանկարծ մեզնից մեկը նկատեց տարօրինակ մի մարդու: Նա կանգնած էր գնացքների չվացուցակի մոտ և խորասուզված ուսումնասիրում էր: Նրա հագին խունացած պիջակ էր, ոտքերին, որ նման էին մարզափայտերի, սեղմ քաշված էր զոլավոր տաբատը: Սև, հնամաշ, լայնեզր գլխարկի տակից ցցված ալեխառն մազերից կարելի էր գուշակել, որ տարիքն առած մարդ էր: Խորշոմապատ վզին փաթաթված էր պճնամոլի սև ու սպիտակ վանդակավոր վզնոց, թևատակին բամբուկե բարակ ձեռնափայտ կար:

Նրա հագուստը, կեցվածքը, մի խոսքով՝ ողջ կերպարանքը կարծես «պանչ»-ից* կտրված ծաղրանկար լիներ, որ դըրվել էր երկաթուղային կայարանի ժխորի մեջ: Մեզնից մեկը նկատել էր նրան, հավանորեն ուրախացել, որ ծաղրի նոր առարկա է գտել, և հռհռալով բռնեց Նոսեի ձեռքը:

— Նայի՛ր, նայի՛ր, ա՜յ, նրան:

Բոլորս միանգամից շրջվեցինք, տեսանք բավական տարօրինակ տեսքով մի մարդու: Փորը թեթևակի դուրս գցած՝ նա բաճկոնակի գրպանից հանեց մեծ, նիկելապատ ժամացույցը, որ կախված էր մանուշակագույն քուղից և սկսեց կենտրոնացած նայել մեկ ժամացույցին, մեկ չվացուցակին: Ես տեսնում էի միայն նրա կիսադեմը, բայց անմիջապես ճանաչեցի Նոսեի հորը:

Տղաների մտքով անգամ չէր կարող նման բան անցնել: Բոլորը՝ փռթկալու պատրաստ, անհամբեր աչքերը հառել էին Նոսեին, նրանից սպասելով այդ ծիծաղելի մարդու դիպուկ բնութագրումը: Չորրորդ դասարանցիները դեռևս ունակ չէին հասկանալու, թե ինչ է կատարվում Նոսեի հոգում: Ես քիչ էր մնում կամաց ասեի. «Ախր, դա Նոսեի հայրն է»:

— Այդ տի՞պը: Դեհ, դա «լոնդոնցի մուրացկան է»:

Իմաստ ունի՞ ասելու, թե ինչքան համերաշխ փռթկացին բոլորը: Մի քանիսը նույնիսկ փորձեցին Նոսեի հոր տնազն անել, փորները դուրս գցեցին, իբր գրպանից ժամացույց են հանում: Ես ակամա խոնարհել էի գլուխս, չէի համարձակվում նայել Նոսեին:

«Պանչ»— անգլիական երգիծական ամսագիր, որ մինչև օրս գոյություն ունի:

— Ինչ ճիշտ անուն տվեցիր դրան:

— Հապա գլխա՛րկը, գլխարկին նայեք:

— Երևի Հիկագետոյի* հնավաճառից է գնել:

— Չէ, դժվար թե Հիկագետոյում այդպիսի գլխարկ ճարվի:

— Ուրեմն թանգարանից է:

Բոլորը նորից անհոգ քրքջացին:

Օրն ամպամած էր, և կայարանում կիսամութ էր, կարծես երեկո լիներ: Կիսամութի մեջ ուշադիր հետևում էի «լոնդոնցի մուրացկանին»:

Եվ հանկարծ մի ակնթարթ արևը դուրս եկավ. ձեղնահարկի լուսամուտից հոսեց լույսի բարակ շիթը, իր մեջ առավ Նոսեի հորը... Մեր շուրջն ամեն ինչ շարժման մեջ էր: Շարժվում էր այն ամենը, ինչ գտնվում էր մեր տեսադաշտում և ինչ դուրս էր մեր տեսադաշտից: Այդ շարժումը, որի մեջ դժվար էր զանազանել առանձին ձայներ ու հնչյուններ, ասես մշուշով էր պարուրել վիթխարի սրահը: Չէր շարժվում միայն Նոսեի հայրը: Այդ հին մարդը՝ հնամաշ հագուստով, հնամաշ, սև գլխարկը ետ դրած և ձեռքի ափում պահած մանուշակագույն քուղով գրպանի ժամացույցը, արձանի նման անշարժացել էր գնացքների չվացուցակի առջև, գլխապտույտ առաջացնող մարդկային հորձանքի մեջ:

Հետագայում իմացա, որ Նոսեի հայրը համալսարանական դեղատուն գնալիս, որտեղ աշխատում էր, ցանկացել է տեսնել, թե ինչպես են էքսկուրսիա գնում դպրոցականները, որոնց մեջ էր իր որդին, և մտել է կայարան, առանց տղային իմաց տալու:

•

Նոսե Իսոոն միջնակարգն ավարտելուց քիչ անց հիվանդացավ թոքախտով և մահացավ: Հոգեհանգիստը տեղի ունեցավ դպրոցական գրադարանում: Նոսեի լուսանկարի առջև, որտեղ նա աշակերտական գլխարկով էր, դամբանական արտասանեցի ես: Իմ ճառում, ոչ առանց դիտավորության, մտցրեցի մի նախադասություն:

«Հիշիր ծնողներիդ հանդեպ քո պարտքի մասին»:

**Թարգմ. ՍՈՖԻ ԱՎԱԳՅԱՆԸ**

*Հիկագետոյո— փողոց Տոկիոյում, որտեղ Ակուտագավայի ժամանակ գտնվում էին հնավաճառների կրպակները.



# ՀԱՅ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ԶՐՈՒՅՑՆԵՐ

## Ինձ, ինձ նման, ինձնից ավել

Մշակումը՝ ՀՐԱՉՅԱ ԹԱՄՐԱԶՅԱՆԻ

Դարերում հին ու փառավոր
Հրամանով մի երկնառաք,
Աշխարհակալ մի թագավոր
Կառուցել էր մի մեծ քաղաք։

Հոչակավոր քաղաք էր դա,
Հրաշակերտ ու գեղեցիկ,
Խոյանում էր այդ քաղաքում
Հազար ու մի եկեղեցի։

Մեծ պալատներ, ապարանքներ,
Պարիսպներ էր շուրջը քաշած,
Աշտարակներն էին կանգնել՝
Ասես հսկա ատամնաշար։

Քաղաքն ուներ մի ծաղրածու՝
Խելապակաս ու լեզվանի,
Պտտվում էր ու աչք ածում,
Թե ում գլխին ծանակ անի։

Ծիծաղում էր, զվարճացնում,
Սիրելին էր խենթ ամբոխի,
Առանց նրա օր չէր բացվում,
Առանց նրա օր չէր փոխվի։

Ծրջում էր միշտ աստ ու անդին՝
Իր շորերը՝ թարս ու շիտակ,
Կարմիր գդակը՝ ճակատին,
Մի փողքը՝ սև, մյուսն՝ սպիտակ։

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Ման էր գալիս առանց մաշիկ,
Մի պարկ սուտ էր հետը տանում,
Մի աչքը՝ խուփ, մի աչքը՝ շիլ,
Ու կատակը միշտ բերանում:

Իր ապրուստը սուտ ասելն էր,
Իր արհեստը՝ խաբել մեկին,
Ու իր տունը՝ մեծ քաղաքի
Մեծ դարպասի դռան տակին:

... Ու գիշերով հասավ էնտեղ
Մի մեծատուն վաճառական,
Բայց քաղաքը քուն էր մտել՝
Դարպասները ամուր փակած:

Հենց որ տեսավ մեր ծաղրածուն,
Շուտ ընդառաջ ելավ նրան.
— Մի բարկանա, բարի անցորդ,
Անօթևան հո չե՞ս մնա:

Ապա մեկնեց մի մեծ սափոր,
Սափորի մեջ՝ արդար գինի.
— Վերցրու, խմիր, հոգնած ճամփորդ,
Խմածդ քեզ անուշ լինի:

Էնպես քաղցր, խաբող խոսքով
Խեղճի խելքը գլխից հանեց,
Խմեց ճամփորդն, ինչքան խմեց,
Էնքան ասես նա ծարավեց:

— Քեզ պես լավ մարդ տեսած չկամ,—
Դարձավ նա մեր ծաղրածուին,—
Ի՞նչ է անունդ, բարեկամ:
— Իմ պատվական անունն է՝ ԻՆՁ:

— Իսկ եղբո՞րդ ինչ են ասում:
— Նրա անունն՝ ԻՆՁ ՆՄԱՆ է:
— Իսկ քրո՞ջդ:— Իսկ քրոջս
Անվանում են ԻՆՁՆԻՑ ԱՎԵԼ:

Վաճառականը զարմացավ՝
Էս տեսակ էլ անո՞ւն լինի,
Բայց զարմանքը իսկույն անցավ,
Երբ գլուխը քաշեց գինին:

Էնպես անկուշտ այնքան խմեց
Նա միմոսի մեծ սափորից,
Մշմշալով պառկեց հողին
Ու խռնջացած իսկույն քնեց:

Այդ ժամանակ մեր միմոսը
Իսկույն նրա շորերն հանեց,
Խանձեց նրա բեղ-մորուսը,
Դեմքը մրեց ու խարանեց:

Առավ նրա քսակն, ապա՝
Քաղաք մտավ գաղտնի անցքից,
Ու լույսը դեռ հազիվ բացված՝
Լուր հասցրեց մեծ քսակից:

Թե՝ ժողովուրդ, էսպե՜ս-էսպե՜ս,
Ով սուտ ասի, թող համրանա,
Մեր կողմերն է հրես ընկել
Մի անհարկու, սև սատանա:

Վաճառականը արթնացավ
Ու ինչ տեսնի, իր շուրջն արդեն
Աղաղակող մի բազմություն,
Մի մեծ ամբոխ է հավաքվել:

Ու անունը հիշեց լսած.
— Ո՞վ է տեսել Ինձ պարոնին,—
— Էս տեսակ բան չէինք տեսած՝
Ինքն իրեն է՞լ մարդ որոնի:

Եվ նա կանգնեց ու կանչում էր.
— Ո՞վ է տեսել Ինձ նմանին,—
Իսկ ամբոխն էլ հո խիղճ չուներ.
— Էլ որտեղի՞ց քեզ պես չարիք:

— Ինձնից ավելն ո՞վ է ձեզնից,—
Ձայն էր տալիս նա ամենքին.
— Քեզնից ավելի անճոռնի
Չի պատահել դեռ ոչ մեկին:

Վերջում եկավ նաև արքան,
Ու նրա հետ՝ ավագանին.
— Վայ, որտեղի՞ց սա լույս ընկավ,
Գրողը թող սրան տանի:

Թափառել եմ ողջ աշխարհում,
Պտտվել եմ երկրեերկիր,
Սակայն ապրած իմ ողջ կյանքում
Չեմ հանդիպել էսպես մեկին:

Ո՞վ է տեսել էսպիսի բան,
Սրա նման, կամ առավել,
Եվ իրոք որ, դու ես միայն
Քեզ նման ու քեզնից ավել:



«Վլադվիսոցկի» փոքր մոլորակը հայտնվել էր Երկրից ամենամոտ հեռավորության վրա: Դա պատահեց բանաստեղծի ծննդյան նախօրեին: Ահա այսպիսի յուրահատուկ նվեր մատուցեց տիեզերքը Վլադիմիր Վիսոցկուն: Երբ «Վլադվիսոցկի» մոլորակի միջին հեռավորությունը Երկրից 465 միլիոն կիլոմետր է, ապա դիմակայության պահին մոլորակը մոտեցել էր գրեթե 150 միլիոն կիլոմետրով: Մարսի և Յուպիտերի ուղեծրերի միջև «Վլադվիսոցկի» մոլորակը արևի շուրջը մի պտույտ է կատարում հինգուկես երկրային տարվա ընթացքում: Մոլորակի հաջորդ այդպիսի «մոտ տեսակցությունը» Երկրի հետ կկայանա մեկուկես տարի անց:

**ՎԼԱԴԻՄԻՐ ՎԻՍՈՑԿԻ**

## Հրաժեշտ լեռներին

**Լեռներից էլի դառնում ենք մենք տուն՝
հրմշտոցի մեջ քաղաքի կրկին,
էհ, ճարներս ինչ, իջնում ենք տրտում,
թողնելով այնտեղ՝ հեռվում, լեռներում,
մեր սիրտն ու հոգին:**

**Դե, թողեք վեճերն հին ու ատելի,
ես համոզվել եմ՝ ինքս ինձ պեղել.
լեռներից լավը լեռներն են էլի,
ուր դեռ չեմ եղել,
ուր դեռ չեմ եղել:**

**Ով կուզե մնալ մենակ ցավի դեմ
և ով՝ հեռանալ՝ սրտի մեջ կսկիծ,
բայց դե, իջնում ենք, ինչ արած, գիտենք,
աստվածներն էլ են իջնում երկնքից:
Ինչքան խոսք ու հույս,
ինչքան երգ, թեմա
պարգևում են մեզ լեռները, ետ կանչում,
բայց մենք իջնում ենք, մեկը մի տարով,
իսկ մեկը՝ ընդմիշտ, որովհետև միշտ,
որովհետև միշտ
պիտի ետ դառնանք
նույն ճանապարհով:**

Թարգմանեց ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳՐԻԳՈՐՅԱՆԸ

# ՆԱ ԽԻՂՃՆ ԻՐ ԿՐԵՑ ՍՐՏԻՆ ԱՆՉԱՓ ՄՈՏ

Վլադիմիր Վիսոցկու մասին այսօր բազմաթիվ լեգենդներ և առասպելներ են շրջում: Սակայն ցանկալի է իմանալ այն, ինչ իրականում եղել է:

Այսօր Մոսկվայի Մալայա Գրուզինսկայա փողոցի բնակարանում ամեն ինչ այնպես է, ինչպես եղել է նրա կենդանության օրոք: Կարելական կեչուց պատրաստված պատի հին ժամացույցի սլաքները կանգ են առել 4-ն անց 10 րոպեին: Այստեղ 1980 թվականի հուլիսի 25-ի վաղ առավոտյան կանգ առավ Վլադիմիր Վիսոցկու սիրտը:

Նա չուներ ժողովրդականի կոչում, սակայն իսկական ժողովրդական երգիչ էր: Չի դադարում նրա գերեզմանին այցելության եկող մարդկանց հոսքը, իսկ հուշարձանը ծածկված է ծով ծաղիկներով: Ասես երեկ է մահացել:

Այսօր որդու բնակարանում ապրում է մայրը՝ Նինա Մաքսիմովնա Վիսոցկայան: Նա աշխատանքի վետերան է, մասնագիտությամբ՝ գերմաներեն լեզվի թարգ-

մանիչ: Հյուրասենյակի պատերին Վիսոցկու նկարներն են: Գրապահարանում գրքեր ու նյութեր են մի մարդու մասին, որին այսօր ճանաչում են աշխարհի շատ երկրներում:

— Վոլոդյան փոքր հասակում շատ հետաքրքիր երեխա էր,— պատմում է մայրը,— նա վաղ սկսեց խոսել: Առաջին նախադասությունը, որ ասաց, հետևյալն էր. «Ահա նա, լուսինը»: Երկու տարեկանում արդեն շատ բանաստեղծություններ գիտեր և կարդում էր բավական արտահայտիչ, միշտ կանգնելով մի բարձր տեղ, հաճախ՝ աթոռակի վրա:

Երբ Վոլոդյան ավարտեց տասներորդ դասարանը, բնականաբար հարց ծագեց, թե որտե՞ղ է շարունակելու ուսումը: Նա բավական վճռական հայտարարեց. «Ուզում եմ գնալ թատերական»: Բայց հարազատները՝ մայրը, հայրը, պապը՝ Վլադիմիր Սեմյոնովիչ Վիսոցկին, որ իրավաբան էր, լսել անգամ չուզեցին այդ մասին: Պապը կարողացավ թոռանը համոզել: Վոլոդյան իր դասընկերոջ՝ Իգոր Կոխանովսկու հետ միասին գործերը հանձնեց Մոսկվայի ինժեներաշինարարական ինստիտուտ և դարձավ ուսանող:

Սակայն գծագրերը Վոլոդյային քիչ էին հետաքրքրում: Իգորը պարապում էր, իսկ նա սենյակում այս ու այն կողմ էր քայլում, սուրճ խմում և մտածում: Մի անգամ ուշ երեկոյան նրանք երկուսով նստած գծագրում էին: Դա առաջին կուրսում էր: Հանկարծ Վոլոդյան գոռաց. «Վե՛րջ, բավական է, ես այլևս չեմ ուզում սովորել այս ինստիտուտում»: Եվ վերցնելով տուշը, թափեց գծագրի վրա: Մայրը մինչև օրս էլ պահում է այդ գծագիրը: Հաջորդ օրը Վոլոդյան գործերը վերցրեց ինստիտուտից, իսկ երեկոյան մորն ասաց. «Մայրի՛կ, դու մի հուզվիր, ես գիտեմ՝ կգա ժամանակ, երբ ես կելնեմ բեմ, իսկ դու կնստես դահլիճում, և քո մեջ ցանկություն կառաջանա կողքիդ նստած անծանոթին շշնջալ. «Նա իմ որդին է»: Ես կդառնամ դերասան, լավ դերասան, և դու չես ամաչի ինձ համար»:

Մայրը, հանկարծ, միանգամից հավատաց նրան ու արդեն այնքան էլ չէր ափսոսում, որ որդին թողել է ինստիտուտը:

Կես տարի, մինչև թատերական ըստուդիա ընդունվելը, նա քրտնաջան պարապում էր դրամատիկական խմբակում, որը ղեկավարում էր Փոքր թատրոնի դերասան Վլադիմիր Բոգոմոլովը: Նինա Մաքսիմովնան հաճախ էր լինում խըմբակի փորձերին: Մի օր փորձից հետո մոտեցավ Բոգոմոլովին և հարցրեց (չնայած արդեն գիտեր պատասխանը). «Կարո՞ղ է Վոլոդյան կյանքը նվիրել թատրոնին»: «Ոչ միայն կարող է, այլ պե՛տք է նվիրի: Ձեր որդին տաղանդ է», պատասխանեց դերասանը:

Վոլոդյան Իգորի հետ միասին բանաստեղծություններ էր գրում դեռ դպրոցում: Իգորի մոտ պահպանվել է նրա բանաստեղծությունների ստվար տետրը: Նրանք թեման վերցնում էին դպրոցական կյանքից, և բանաստեղծությունները բավական ուրախ էին ստացվում:

Վոլոդյան թատերականի առաջին կուրսում էր, երբ սկսեց երգել: Իսկ կիթառ նվագել սովորել էր 17 տարեկան հասակում: Խռպոտ ձայն ուներ, որը սկզբում շատ դժվարություններ ու խոչընդոտներ էր ստեղծում նրա համար:

«Ուղղահայաց» կինոնկարում Վոլոդյան հանդես եկավ և՛ որպես դերասան, և՛ որպես երգերի հեղինակ: Դրանից հետո պարզ դարձավ, որ նա գրում է իսկական երգեր: Ում համար էլ որ նա երգեր՝ հազար հոգու, թե մեկ մարդու, Վոլոդյան այնպես սրտաբաց էր, կարծես երգում էր վերջին անգամ:

Վիսոցկու բոլոր երգերը իր կյանքի շարունակությունն են: Նա հաճախ էր գիշերվա կեսին արթնացնում մորը և ասում. «Մայրի՛կ, ես երգ եմ գրել»: Եվ մայրը առաջինն էր լսում նրա նոր գրած երգը: Եթե ցուրտ չէր լինում, բացում էր պատուհանը, որի տակ հավաքվում էին ուշացած անցորդները և երբեմն վիճում՝ մագնիտաֆո՞ն է, թե՞ ձայնարկիչ:

Զարմանալի է, Վիսոցկին ինչպես էր հասցնում խաղալ թատրոնում, նկարահանվել կինոյում, ճանապարհորդել, լինել աշխարհի շատ երկրներում, գրել ըսցենարներ և անթիվ երգեր: Դրանց թիվը հասնում է հազարների: Հիմնականում նա գրում էր գիշերը: Ժամը 4-ից շուտ չէր պառկում քնելու: Իսկ առավոտյան 10-ին շտապում էր թատրոն՝ փորձի: Շտապում էր ամեն ինչ հասցնել... Մահվանից մի քանի օր առաջ ճակատագիրը կարծես նրան զգուշացրեց. ընկերների հետ մեքենայի մեջ էր, երբ հանկարծ վատ զգաց: Դուրս եկավ մեքենայից և հասկացավ, որ սիրտն է... Սակայն շարունակեց առաջվա նման աշխատել:

Վիսոցկու բանվորության կարևոր գի-

ծը բարությունն էր: Մանկուց շատ բարի էր: Նա բակի բոլոր երեխաներին հրավիրում էր տուն և իր ունեցած հագուստներից, խաղալիքներից ու գրքերից նվիրում էր նրանց: Իսկ հետո, երբ արդեն հայտնի դերասան էր, և երբ ինչ-որ անհաջողություններից հետո նրա մոտ հյուր էին գալիս ընկերները, նա պահարանից հանում էր իր սվիտերը կամ պիջակը ու նվիրում նրանց: Նա իր պարտքն էր համարում օգնել ընկերոջը, ինչքան էլ ծանրաբեռնված լիներ գործերով, միշտ օգնության էր շտապում նրանց, ովքեր ունեին դրա կարիքը: Վոլոդյան բնատուր ընդունակություն ուներ մարդկանց օգնել նույնիսկ այն դեպքում, երբ օգնելն անհնար էր թվում:

Կենդանության օրոք նրան, մեղմ ասած, չէին շտապում տպագրել: Մի անգամ զանգահարեցին խմբագրությունից և ասացին, որ բանաստեղծությունները չեն կարող հրատարակել: Նա լուռ մոտեցավ պատուհանին, քիչ կանգնելուց հետո հանկարծ կտրուկ շուռ եկավ և ասաց. «Միևնույն է, ինձ կտպագրեն, թեկուզ իմ մահից հետո, բայց կտպագրեն»: Սակայն կենդանության օրոք նրա բանաստեղծությունները «տպագրվում էին» ամենասրբազան «հրատարակություններում»՝ զոհված ալպինիստների շիրմաքարերին:

Երբ լսում ենք նրա երգերը, ամեն ինչում՝ բառի և մտքի լարվածության մեջ, կոպիտ ձայներանգում, մեղեդու հուքում մենք զգում ենք նրա անձնական ողբերգությունը: Նա ժամանակից շուտ էր ծնվել, բոլորից շուտ համարձակվեց իրերը բարձրաձայն կոչել իրենց անուններով, հատկապես դրանով էր նա իր ժամանակից առաջ անցել: Վիսոցկին ոչ թե պարզապես անհատ էր, նա երևույթ էր, և նրան պետք է ընդունել որպես մի ամբողջություն:

Վիսոցկու բազմաթիվ երկրպագուներից մեկի գրած բանաստեղծության այս տողերը խիստ բնորոշ են նրան.

«... Նա խիղճն իր կրեց սրտին անչափ մոտ,
Ինչպես մարտիկը արկի բեկորն իր»:

Ամբողջ կյանքում շտապեց, շտապեց մարդկանց ճշմարտությունն ասել իր մասին, իր ժամանակակիցների, մեր ժամանակի մասին: Նա շտապեց և հասցրեց...

**«Օգոնյոկ» № 38-ից (1986 թ.)**

**փոխադրեց ՇՈՂԻԿ ՆԱԼԲԱՆԴՅԱՆԸ**

Մարդը սովորաբար «ռոբինզոնային» վիճակի մեջ է ընկնում հանկարծակի, առանց համապատասխան ապարատների ու գործիքների, որոնց միջոցով հնարավոր է կանխագուշակել սպասվելիք եղանակը:

Սակայն բնության մասին հարուստ գիտելիքներ ունեցող մարդու համար դժվար չէ կարդալ «բնության գիրքը», անսխալ կերպով կողմնորոշվել ամենուրեք, ելք գտնել դժվար իրավիճակներում: Նման գիտելիքներ ունեցողի համար դժվար չէ գուշակել նաև սպասվելիք եղանակը:

Դեռ անհիշելի ժամանակներից ի վեր, հետևելով բույսերին, մարդը նկատել է, որ դրանք չափազանց նրբազգաց են կլիմայական փոփոխությունների նկատմամբ:

Գոյություն ունեն 400-ից ավելի զարմանահրաշ բույսեր, որոնց միջոցով, ինչպես բարոմետրով, կարելի է վաղօրոք կանխագուշակել եղանակը: Դրանցից են աստղիկը կամ ստելլարիան, պատատուկը, զանդեղեսխիան-փողաշուշան (կալլա), դաշտակոտեմը, կանթեղախոտը, քարամոշը, առվույտը, թթվառվույտը, խատուտիկը և այլն: Այս բույսերի վերգետնյա մասը անձրևից մի քանի ժամ առաջ ծածկվում է ջրի խոշոր կաթիլներով: Բանն այն է, որ անձրևից առաջ օդը հագենում է ջրային գոլորշիներով, և կտրուկ կերպով նվազում է բույսերի կողմից ջրի գոլորշիացումը: Սակայն արմատները շարունակում են ջուր կլանել և արմատային ճնշման ուժով ուղարկել դեպի վերերկրյա օրգանները: Ավելորդ ջուրը, չգոլորշիանալով, արտազատվում է կաթիլների ձևով: Այդ կաթիլների արտազատումը տեղի է ունենում ոչ թե տերևների ամբողջ մակերեսով մեկ, այլ դրանց ծայրին գտնվող ջրատար հատուկ հերձանցքերով, որոնց միջով հոսում է ավելորդ ջուրը: Եթե օդը չոր է և անձրև չի սպասվում, ապա տերևները ջուրը գոլորշիացնում են, և այդ երևույթը վերանում է: Բույսի վրա ջրի նման կաթիլներ նկատելու դեպքում կարելի է գուշակել, որ շուտով անձրև է տեղալու:

Նույնպիսի հատկություն ունի նաև բաղիսենին: Անձրևից առաջ նրա խոշոր, ձվաձև տերևների վրա ջրի կաթիլներ են հայտնվում: Վատ եղանակը նույն ձևով են կանխազգում նաև ջրում կամ ջրի ա-




ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# ԻՆՉՊԵ՞Ս ԿԱՐԵԼԻ Է ԳՈՒՇԱԿԵԼ ԵՂԱՆԱԿԸ ԲՈՒՅՍԵՐԻ ՄԻՋՈՑՈՎ

փին աճող բույսերը: Խոնավ եղանակից առաջ ջրի կաթիլներ են երևում նաև ձիակասկի տերևների վրա: Անձրևից առաջ հինածաղկի ցողունը նույնպես խոնավանում է: Որոշ թփկիներ կաթիլներ են արտազատում տերևակոթունի հիմքի մոտ, անձրև տեղալուց մի քանի օր առաջ:

Աստղիկը նույնպես կարող է ծառայել որպես եղանակի հրաշալի բարոմետր: Եթե մինչև առավոտյան ժամը 9-ը բույսի ծաղիկը խոնարհված է և ծաղկաթերթիկները լրիվ չեն բացվում, ուրեմն, ցերեկվա ընթացքում անպայման անձրև կգա: Եթե վաղ առավոտից աստղիկի ծաղիկները զվարթորեն դեպի երկինք են նայում ու լրիվ բացված են, ապա չպետք է կասկածել, որ սպասվում է պարզ, արևոտ եղանակ և, երկինքը որքան էլ ծանր ու գորշ ամպերով պատված լինի, միևնույն է, անձրև չի տեղալու: Ամբողջ սեզոնի ընթացքում կարելի է օգտվել այս «բարոմետրից», քանի որ աստղիկը մեր հանրապետության տարածքում հանդիպում է ամենուրեք և, բացի այդ, ծաղկում է ապրիլից մինչև ուշ աշուն:

Անձրևային եղանակի նկատմամբ առանձնապես զգայուն է սովորական պատատուկը: Երբ այդ բույսի ծաղիկները սկսում են փակվել, ուրեմն՝ շուտով անձրև է տեղալու, իսկ եթե նույնիսկ ամպամած եղանակին բացվում են, ապա պարզ, արևոտ եղանակ է սպասվում: Նույն ձևով եղանակը կարելի է կանխագուշակել նաև վաղենակի (կալենդուլա) միջոցով:

Հունիսից մինչև սեպտեմբեր, չոր բացատներում, բլուրների վրա, թփուտներում հանդիպում է թանթռնիկը: Եթե այս բույսի ծաղկաթերթիկները գիշերամուտին չեն փակվում, ուրեմն առավոտյան անձրև կտեղա: Եվ, հակառակը, եթե ծաղիկները փակվում են գիշերը, ուրեմն հաջորդ օրվա ընթացքում լավ եղանակ է սպասվում: Վատ եղանակին բացվում են նաև քարբեկի, սալաթ-կաթնուկի և այլ բույսերի ծաղկաբույլերը:

Բնությունը լավ ճանաչող մարդիկ գիտեն, որ անձրևից առաջ անտառում ու տափաստաններում, մարգագետիններում ծաղիկները զարմանալի ուժով են բուրում: Շատ բույսեր անձրևից առաջ սկսում են մեծ քանակությամբ նեկտար արտազատել, ասես շտապելով միջատներին հրավիրել փոշոտելու իրենց ծա-

ղիկները, քանի դեռ վատ եղանակ չի սկսվել: Անձրևից առաջ մեղրատու բույսերի շուրջը (լորենիներ, փշատենիներ, ցախակեռասներ, կիպրոս, սրնգենի) մեծ քանակությամբ մեղուներ են հավաքվում: Գիշերը ցախակեռասների ուժեղ հոտը վատ եղանակ է գուշակում: Անձրևից առաջ շողավարդի ծաղիկների արտազատած նեկտարը հրապուրում է բազմաթիվ թիթեռների, որոնք այս բույսի հիմնական փոշոտիչներն են: Լավ եղանակից առաջ շողավարդի գլխիկները նեկտար չեն արտազատում, և նրանց վրա միջատներ չեն նստում:

Բնությունը լավ ճանաչողները կարող են եղանակը կանխագուշակել նաև բույսերի տերևների դիրքով: Անձրևից առաջ թթվառվույտի տերևաթիթեղները խոնարհվում են, սեղմվում կոթունին: Արծվապտերի (պտերիդիում) տերևները ցած են թեքվում տաք, չոր եղանակին և ուղղվում են վատ եղանակից առաջ: Եղանակը կանխագուշակում են նաև ճահճային փողաշուշանի ծաղկաբույլը շրջապատող սպիտակ տերևի դիրքով: Անձրևից առաջ այն թեքվում է մի կողմ, իսկ պարզ եղանակի դեպքում տերևի սուր ծայրը ուղղահայաց կերպով դեպի վեր է բարձրանում: Չպետք է մոռանալ, որ ճահճային բույսերը թեև ապահովված են առատ ջրով, այնուամենայնիվ, հաճախ օդի խոնավության պակաս են զգում: Երբեմն էլ, նրանց արմատները, ցածր ջերմաստիճանի հետևանքով, անկարող են վերերկրյա օրգաններին անհրաժեշտ քանակությամբ ջուր մատակարարել:

Բույսերը հատկապես նրբազգաց են ցրտեր սկսվելու և ավարտվելու նկատմամբ: Օրինակ, արդեն ապրիլ-մայիսին ջրամբարների, լճակների հատակից ջրի մակերես են ձգվում ջրաշուշանները: Եթե այս գեղեցկատես բույսի տերևը լողում է ջրի մակերեսին, նշանակում է գիշերային ցրտահարություններ այլևս չեն լինելու: Վատ եղանակից առաջ ջրաշուշանը ծածկվում է ջրում: Սովորական թխենին մշտապես ծաղկում է ուշ գարնանային ցրտահարությունների վըտանգը վերանալուց հետո, իսկ կեչու տերևները սովորաբար դեղնում են վաղ աշնանային ցրտահարություններից անմիջապես առաջ:

Հնուց ի վեր մարդիկ ցուցիչ (ինդիկատոր) համարվող բույսերն օգտագործել են տարվա ընթացքում ոռոգման ռեժիմը կանոնավորելու, այս կամ այն գյուղատնտեսական աշխատանքները ժամանակին կատարելու համար: Բնության ապավինած մարդը այդ նշանները կարող է օգտագործել անակնկալներից խուսափելու համար: Էլ ավելի կարևոր է երկարաժամկետ գուշակությունների հարցը: Չէ՞ որ երբեմն պատահում է՝ երկար ժամանակով մարդը մնում է բաց երկնքի տակ: Այս դեպքում պետք է կարողանալ ավելի հեռուն գնացող գուշակություններ անել, դարձյալ ելնելով բույսերի հետ կատարվող որոշ փոփոխություններից:

Օրինակ, մարդիկ նկատել են, որ մեր անտառների վերին գոտում հանդիպող սովորական արոսենին մի զարմանալի ու հանելուկային հատկություն ունի: Եթե սպասվում է տաք և երկարատև աշուն, ապա արոսենին սովորականից շատ ավելի ուշ է ծաղկում: Ընդհակառակը, եթե ծաղկումը վաղ է սկսվում և շուտ է ավարտվում, ապա աշունը կարճատև կլինի: Անտառային շրջանների յուրաքանչյուր բնակիչ կարող է հաստատել, որ ընկուզենու քարաքոսի շերտի հաստությամբ կարելի է որոշել՝ խստաշո՞ւնչ կլինի առաջիկա ձմեռը, թե ոչ: Եթե կեչու տերևները լաստենու տերևներից ավելի շուտ են բացվում, ապա չոր ամառ է սպասվում, և ընդհակառակը: Երբեմն ամռան բնույթը փորձում են որոշել ավելի վաղ, երբ դիտվում է կեչու հյութաշարժը: Եթե բնի վրա վերք ունեցող կեչուց ապրիլին շատ հյութ է հոսում, ապա պետք է ենթադրել, որ ամառը անձրևային կլինի: Հակառակ դեպքում՝ չոր և երկարատև ամառ է սպասվում:

Այս նշանները մարդկանց հայտնի էին հարյուրամյակներ և հազարամյակներ առաջ: Դրանք սերնդից սերունդ են փոխանցվել, փոփոխվել ու ճշգրտվել մարդկանց փորձի, գիտելիքների ընդհանրացման շնորհիվ: Սակայն աշխարհագրական տարբեր լայնություններում այդ նշանները տարբեր բնույթ ունեն: Տեղական բույսերի վարքի հիման վրա ճիշտ գուշակություններ կարող է անել այն բնագետը, որը ավելի հաճախ է լինում բնության գրկում, համառորեն ուսումնասիրում ամեն ինչ, որոշակի տրամաբանական կապ փնտրում զանազան առարկաների ու երևույթների միջև: Իսկ այդ բոլորի համար անհրաժեշտ է բնության մեջ շրջել «բաց աչքերով»:

ԻՆԴԵՔՍ՝ 77808 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.

ՂԵՎՈՆԴ ԱԼԻՇԱՆ

# Պլպուլն Ավարայրի

Ո՜հ դու, բարեկամ, այրած սրտերու,
Խոսնակ գիշերո, հոգյակ վարդերու,
Երգե՜ պլպուլիկդ, երգե ի սարեղ,
Ջանմահ քաջքն Հայոց երգե՜ հոգվույս հետ:
Պլպո՜ւլ, քեզ համար մեր հարքն ասացին,
Թե չէ հավ՝ պլպուլ մեր Ավարայրին,
Եղիշյա հոգյակն է քաղցրագրուցիկ,
Որ զՎարդան ի վարդն տեսնու կարմրիկ:

Չափավոր
Moderato ♩. = 58

S. A. / T. B.

p Ո՜հ դու բա - րե - կամ այ - րած սըր - տե - րու. Խու - նակ գի - շե -
- րու. Հոգ - յակ վար - դե - րու. Հոգ - յակ վար - դե - րու.



Գլխավոր խմբագիր՝ **ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՇՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.: